

# ԱՌԱՋԻ՛Ն ՂՈՂԱՆՋ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Մեր ականջում դեռ կանաչ
Սոսափյու՛նն է անտառի,
Մեր հուշերում՝ կապուտաչ
Լուսաբացը ճամբարի...

Հիմա քեզ մոտ ենք եկել
Ճամփաներով կարոտի,
Հոգնությունը մեր թողած
Բավիղներում թավուտի:

Դու էլ ունես կածաններ,
Որ ձգում է ամենքին,
Եվ բյուր աստղեր ես ցանում
Բարձունք տանող ճամփեքին:

Դե ղողանջի՛ր, ղողանջի՛ր,
Թրթռա՛ մեր ականջին
Ու բոլորին նե՛րս կանչիր,
Զանգի ղողա՛նջ առաջին:

# ՏԱՍԸ ՏԱՐԻ

ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

Քսան տարի է անցել այն օրից, որ ես առաջին անգամ մորս ձեռքը բռնած, ոտքս իմ այս դպրոցի շեմքից ներս դրի: Տասը տարի է, որ ավարտել եմ դպրոցը: Տասը տարի անց, առաջին անգամ այցելության եմ գալիս նրան:

Ծեր պահակը գլուխը դրել է բաց գրքին և քնել: Զանգից տասնհինգ րոպե է անցել: Նայում եմ գրքի կազմին: «Պապ թագավորն» է: Երբ ես հայոց այբուբենն էի սովորում, մեր դպրոցի պահակը կարդում էր նույն գիրքը և հիմա էլ կարդում է քանիերորդ անգամ: Մտածեցի, որ եթե նա արթնանա, մինչև ընդմիջման զանգը չի թողնի ներս մտնել: Եվ հենց այդ պահին մոռացված ու հին, անչափ ծանոթ զգացումները արթնացան իմ մեջ:

«Ի՞նչ կլինի, եթե ուսմասվարը դեմս ելնի...» «Տեսնես, ինձ բացակա նշանակե՞լ են...» «Ե՞րբ է ծնողական ժողովը...» «Լավ չեմ անում, որ դասի չեմ նստում,— իմ մեջ խոսեց ավելի մեծահասակ աշակերտը.— ի՞նչ քաղաքացի դուրս կգա ինձնից, եթե այսպես խախտեմ դպրոցական կանոնները»... Այն ժամանակ ես երբեք այսպես չէի մտածում: Ծիծաղելով սկսեցի բարձրանալ վեր, հիշելով, որ քսանվեց տարեկան եմ: Անսպասելիորեն ինձ բռնեցի մի անթույլատրելի արարքի մեջ: Ես կռացել էի ֆիզիկայի լաբո-



# ԲԱՐՈՎ ԵՆՔ ԵԿԵԼ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ



Ամառը անցավ,
Ողջո՜ւյն քեզ, դպրո՛ց,
Ողջո՜ւյն ձեզ, ծառե՛ր՝
Մեր ձեռքով տնկած
Եվ ճասակ առած մեզ հետ միասին:
Ողջո՜ւյն քեզ կրկին,
Պատից մեզ նայող մե՛ծ Մեսրոպ Մաշտոց,
Որ դպրոցական առաջին օրից
Խրատել ես մեզ և խրախուսել:
Ողջո՜ւյն, դասարա՛ն՝
Սրտաբաց, պայծառ,
Ողջո՜ւյն, նստարա՛ն,
Հարազա՛տ ընկեր,
Կարոտել ենք քեզ...
Կարոտել ենք ձեզ, մեր ուսուցիչնե՛ր,
Դուք, որ քայլ առ քայլ
Առաջնորդում եք
Արահետներով երազանքների,
Սովորեցնում եք մեզ սիրել բարին
Եվ չարը ատել...
Վերադարձել ենք փոխված, մեծացած,
Սևացած ու շատ, շատ ամրապնդված...
Ողջո՜ւյն, սիրելի՛ մեր դասագրքեր,
Զանգը հնչում է.
Անցնենք դասարան, բարով ենք եկել...

---

# ԷՐ ԱՆՑԵԼ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



լաբորիայի դռան մոտ և ներս էի նայում բանալու անցքից: «Չի՛ կարելի, ա՛յ տղա...»— ասացի ինքս ինձ, բայց շարունակում էի նայել: Ագահորեն ներս էի նայում և լսում սիրելի ուսուցչիս ձայնը, որը չգիտեմ քանի տասնամյակ կրկնում էր. «Չկա ճնշում առանց արտաճնշման...» և որ եթե իր աշակերտներից մեկնումեկին հաջողվի տիեզերք թռչել, թող իմանա, որ հարազատ մոլորակն իրեն ձգելու է նույն ուժով, ինչ ուժով ինքն է ձգում Երկրին...

«Ինչո՞ւ ես ֆիզիկոս չդարձա,— մտածեցի ես,— որքա՜ն ծերացած է ուսուցչիս ձայնը»: Ես նայում էի Կրամերի ապարատին, որի պատճառով «երկուս» էի ստացել, ուղիղ տասներկու տարի առաջ: «Որքա՜ն էինք չարչարում մենք նրան, փոքրիկ, անմիտ չարաճճիներս...»

Միջանցքով մի ուշացած «հերոս» անցավ, ըստ երևույթին առաջին դասարանից: Նա ծանր պայուսակը տանում էր հատակին քսելով: «Հերոսը» խլշկոտեց ու պարմանալի անշշուկ վազքով անհետացավ: Միջանցքում հայտնվեցին երկու, ինձ հասակակից աղջիկներ... «Սրա՞նք ինչ գործ ունեն այստեղ,— մտածեցի ես և նկատեցի, որ նրանք չափազանց խիստ ու լուրջ դեմքեր ունեն,— հասկացա, ուսուցչուհիներ են»: Եվ հիշեցի, որ ես քսանվեց տարեկան եմ: Նը

*րանցից մեկի ձեռքին դասամատյան կար, մյուսի ձեռքին օրագրեր էին:*

*— Դուք ո՞ւմ եք փնտրում:*

*— Իսկ դուք ուսուցչուհինե՞ր եք,— հարցին հարցով պատասխանեցի ես:*

*— Այո՛,— ասացին նրանք,— արդեն երեք տարի է:*

*...Երեք տարի... Ես սկսեցի հարցուփորձ անել իմ ուսուցիչների, իմ հին դպրոցից մնացած ամեն ինչի մասին:*

*Իմ ուսուցիչներից քչերն էին մնացել մեր դպրոցում: Հավաքարարները գրեթե նույնն էին, պահակը չէր փոխվել: Իսկ դպրոցը հիմա շատ ավելի ճաշակով ու գեղեցիկ էր ձևավորված, շատացել էին ծաղիկներն ու կանաչը միջանցքներում, բայց էլի, էլի նույն գրատախտակի ու կավճի ծանոթ հոտը կար...*

*— Դուք այստե՞ղ եք սովորել,— գլխի ընկավ ուսուցչուհիներից մեկը:*

*«Նրանք դեռ դպրոցն ավարտած աշակերտներ չեն տեսել»,— մտածեցի ես:*

*— Զգիտե՞ք, որ լավ չէ դռան ճեղքից ներս նայելը,— ասաց մյուսը:*

*— Գիտեմ,— ասացի,— ես ուղում էի...*

*— Համենայն դեպս դուք ո՞ւմ եք փնտրում,— հարցրեց սրանցից մեկը:*

*— Ինձ էի փնտրում,— ասացի ես ու շրջվելով հեռացա:*

*— Դուք ֆիզիկո՞ս եք,— հարցրեց մեկն իմ ետևից:*

*— Գրեթե,— պատասխանեցի ես,— ատաղձագործ եմ:*

*Դուրս եկա դպրոցից, այդպես էլ չհանդիպելով ծանոթ մեկնումեկին, և որոշեցի գրել ամեն ինչ այնպես, ինչպես եղավ:*





# ԵԹԵ ՍԱՐՅԱԿԸ ԽՈՍԵՐ

Լսել էի և կարդացել, որ կենդանիներին նույնպես հատուկ է սիրո զգացումը: Այո՛, թեև բնազդով, բայց ոչ պակաս ուժով, քան մարդիկ, նրանք սիրում են միմյանց: Դրանում ես համոզվեցի մափսյան մի արևոտ օր:

Պատշգամբում նստած հաց էինք ուտում, երբ լսեցի երեխաների ուրախ գոռում-գոչյունները: Դուրս եկա, և ի՞նչ... Քսանից ավելի երեխաներ լցվել էին մեր բակը, իսկ նրանցից մեկը ջանքեր



*Նկ. ԿԱՐԱՊԵՏ ԱԴԱՄՅԱՆԻ, 8 տ.*
*Արարատի շրջան, գյուղ Արմաշ*

էր թափում ծառը բարձրանալու: Մոտեցա: Ինձ տեսնելով ետ-ետ գնացին ու փորձեցին հեռանալ:

— Ի՞նչ է պատահել, երեխանե՛ր, ինչո՞ւ եք աղմկում,— հարցրի ես:

Բոլորը լռեցին, իսկ մեկը քաշվելով ասաց.

— Թռչուն ենք սպանել, ընկել է ձեր կտուրը, ուզում ենք վերցնել:

— Ի՞նչ...

— Դե սարյակ ենք խփել, ձեր կտուրին է ընկել...

«Մի անօգնական թռչնակ ու այս հսկա ամբոխը»,— մտածեցի ես ու վեր նայեցի: Ընկածը չէր երևում, իսկ կտուրի վրա նախրող գեղեցիկ սարյակը ողբում էր իր ընկերոջ մահը: Զնայած նրա լեզուն չէի հասկանում, բայց կոկորդումս դառնություն զգացի, աչքերս խոնավացան: Սրբելով արցունքներս, որպեսզի երեխաները չտեսնեն, ծառ բարձրացա ու ձեռքս մեկնեցի ընկածին: Մարին աղեկտուր ճչոցով խոյացավ վրաս, և եթե ձեռքս





ժամանակին ետ չքաշեի, հավատացած եմ, որ մի վնաս կհասցներ:

Երեխաները լուռ կանգնած էին ծառի տակ, իսկ ես չգիտեի, ի՞նչ անել: Մարին կարծես ուզում էր խոսել, մի կարևոր բան ասել... բայց չէր կարողանում:

Երևի դեռ երկար կնայեինք իրար, գուցե նրա զայրույթն ու տագնապը կմեղմանար ու թույլ կտար վերցնել ընկածին: Բայց այդ պահին ոտնաձայն լսեցի: Ետ նայեցի: Մի սև, չաղլիկ կատու գաղտագողի մոտենում էր ընկածին: Կանաչ, փայլուն աչքերը հառել էր վրան և զգուշացնում էր, որ չխանգարեմ իրեն: Չգիտեմ վախի՞ց, թե՞ սարյակին փրկելու ցավից ես բարձրաձայն ճչացի: Իմ ձայնից վախեցած սարյակը վեր թռավ. մի քիչ օդ բարձրացավ, բայց հավասարակշռությունը կորցնելով՝ նորից ձեղնահարկին ընկավ:

Հաջորդ վայրկյանին կատուն... կատուն արդեն բերանն էր լիզում, իսկ ես երեխայի նման արտասվում էի: Մարին նորից նայեց ինձ: Օ՜, երբեք չեմ մոռանա այդ րոպեն, ինչպե՜ս էր մարին նայում ինձ... Եթե կարողանար խոսել, բացել բերանը, հավատացած եմ, որ կթքեր երեսիս... Բայց նա երկար չմնաց, թռավ գնաց:

Կարծում էի, թե էլ չի վերադառնա, կմոռանա կատարվածը: Բայց հաջորդ օրը դպրոցից վերադառնալիս մեր տան մոտ հանդիպեցի նրան: Կարծում եմ, որ նա էր, թվաց թե հիմա, հիմա կխոսի... Չէ՞ որ տարվա այդ եղանակին նրանք արդեն թուխս են նստում, ձագեր հանում: Միայնակ մարին ինչպե՞ս պետք է կերակրի ձագուկներին, պաշտպանի նրանց թշնամիներից:

Եվ այս ամենի պատճառը անմիտ երեխաներն էին, որոնք դրանից հետո էլ շարունակում էին անհոգ խաղալ փողոցում:

ԵՐԱԶԻԿ ՆԱՀԱՊԵՏՅԱՆ
*Էջմիածնի № 1 դպր. 9-րդ դաս. աշ.*

---



ՀԱՐԳԵԼԻ՛ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ.

*Մեզ մոտ ծառերի, բուսականության նկատմամբ այնքան էլ խնամքով չեն վերաբերվում։ Մարդաշատ վայրերում հաճախ կարելի է տեսնել խազբզված բներով, ճղակոտոր ծառեր։ Անցյալ ամռան արձակուրդին գնացի Գագրիի մոտ գտնվող մի գյուղ։ Ես այնտեղ խազբզված, անուններ գրված ծառեր չտեսա, բացի մի տեղից, այն էլ հայերեն գրված էր «ԱՐՈ», իհարկե Խորենի հետ գաղտնի ջնջեցինք (տաշեցինք հանեցինք), ի՞նչ անեինք։*

*Այս նյութը գրված է այդ մասին։*

# «ԾԱՌՆ ԷԼ Է ՑԱՎ ԶԳՈՒՄ, ԼԱԼԻՍ...»

Ակումբի բակում կանգնած է մի դարավոր կաղնի: Ամռանը մարդկանց պաշտպանում է տապից ու փոշուց, ձմռանը՝ մեղմացնում բակի բուքն ու քամին:

Թվում է, անտառից հեռու գտնվող այդ մենավոր ծառը ավելի շատ պետք է շրջապատված լինի մարդկանց հոգատարությամբ, սակայն... Այնքան են փորփրել բունը, անուններ գրել, խզբզել, որ ողջ տեղ չի մնացել:

Մի դպրոցական իմ աչքի առաջ, ծառի սպիացած վերքերի վրա իր անունն է փորագրում: Եվ մի պահ իմ ականջին զնգում է Ծամբա պապի ընդհատ խոսքը՝ «Ծառն էլ է ցավ զգում, լալիս...»

* * *

Ամառային արձակուրդներին մի քանի շաբաթով եղա Վրաստանում: Առաջին անգամ էի այդքան հեռանում գյուղից: Ամեն ինչ հետաքրքիր էր՝ ծով, կանաչ, սար ու ձորեր, դաշտ ու հովիտներ: Ամենուրեք կանաչ: Փարթամ անտառը իջնում էր մինչև գյուղ: Ավելի ճիշտ, գյուղը փռված էր անտառի բացատներում: Տանտերը մի ծերունի էր, որին կոչում էին Ծամբա պապի: Ասում էին, որ նա 126 տարեկան է: Հագնում էր զինվորական բլուզ, երկարաճիտ կոշիկներ, գլխին դնում վրացական քուդի, գոտիկի մի կողմից խանչալն էր կախված, մյուսից՝ ոսկեզօդ դանակը: Չնայած այդ տարիքին, երիտասարդի ավյուն ուներ:



Հայերեն լավ էր խոսում:

Այդ տանը հանգստանալու էր եկել նաև Խորեն անունով մի

 ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

տղա, որի հետ իսկույն ծանոթացա ու միշտ միասին էինք զբոսնում: Շամբա պապը մեզ հաճախ տանում էր անտառի խորքը՝ կաղին, մոշ և այլ հատապտուղներ հավաքելու: Ձորակներում շատ ընկուզենիներ կային:

— Անտառը մեր հարստությունն է,— ասում էր նա,— անտառից վնաս չկա օգուտից բացի, դրա համար էլ խնամքով պետք է վերաբերվել ամեն մի ծառի:

Մի անգամ ահա այդպես նորից խորացել էինք անտառում: Հոգնեցինք, նստեցինք մի հաստաբուն հաճարենու ստվերում ու սկսեցինք հավաքած կաղինից ուտել: Խորենը ծառից-ծառ էր անցնում, հիանում բնության գեղեցկությամբ:

— Վույ մե՛, վույ մե՛... — ծնկներին խփելով հանկարծ խուլ ձայնով մռնչաց Շամբա պապը: Վազեցի նրանց մոտ: Պարզվեց, որ Խորենը մի չոր փայտով հարվածել է մի մատղաշ ծառի բնին, քիչ կեղևատել:

— Վո՞ւյ, քոռանամ, այս ի՞նչ արեցիր, որդի՛,— արտասվալից աչքերով ծերունին դիմեց Խորենին, ձեռքը դնելով քերծվածքի վրա.— բա ծառի կեղևը կըպոկե՞ն. վույ մե՛, վույ մե՛...— ծերունին հանեց թաշկինակը, պատռեց ու մի կտորով կապեց վիրավոր ծառը: Խորենը բառ չէր գտնում ասելու, պլշած նայում էր ծերունուն: Նա Խորենին կանչեց իր մոտ, եղունգը դանակի պես իջեցրեց նրա բաց թևին: Խորենը թևը պոկեց նրա ձեռքից, կծկվեց...

— Հը՞, ցավո՞ւմ է:

— Այո՛ ցավում է, պա՛պ,— կցկտուր ասաց Խորենը:

— Բա որ մի քիչ քո մաշկից պոկեմ, ինչքա՞ն կցավի, չէ՞ որ կեղևն էլ ծառի մաշկն է:

— Որդի՛ս, հասկացի՛ր,— շոյելով նրա գլուխը, ասաց ծերունին,— ծառն էլ է շնչավոր, ծառն էլ է ցավ զգում, լալիս: Ա՛յ, տեսնո՞ւմ ես, պոկված տեղից կաթիլներ են գլորվում, դա էլ ծառի արցունքն է: Մի վերև նայիր, տեսնո՞ւմ ես սաղարթը ինչպես է մեղմ խշշում, դրանով ասում է, թե ինչու ես վիրավորում ինձ, ինչո՞ւ ես միշտ պատճառում...

Այնտեղ մենք ուրիշ վիրավոր ծառ չտեսանք՝ թե՛ անտառում, թե՛ գյուղում և թե՛ ամենուրեք:

Եվ ակումբի բակում տղան փորփրում էր ծառի բունը: Մարը շառաչում էր, վաշ-վի՛շ անում, լալիս, տղան չէր նկատում այդ:

— Ինչո՞ւ ես փորփրում առանց այդ էլ բազում ապիացած վերքերը: Մի՞թե չես նկատում, թե ինչպես է լալիս ծառը,— կշտամբում եմ նրան: Նա գլխիկոր հեռանում է, մի կողմ շպրտելով երկաթյա սուր գործիքը:

Այո՛, բոլորն էլ թող լսեն ու հասկանան Շամբա պապի իմաստուն խոսքը.

— Ծառն էլ է ցավ զգում, լալիս...

ԴԱՎԻԹ ՄԱՆՈՒԿՅԱՆ
*Նաիրիի շրջան, գյուղ [illegible], 9-րդ դաս. աշ.*



## ՄԱՅՐԻԿԻ ԳՐԿՈՒՄ

Մանուկը մուշ-մուշ մոր գրկում ննջել
Ու երազի մեջ մորն է անրջել,
Իբրև, մայրիկը հեռու է հիմա...
Եվ իր մայրիկին կարոտում է նա,
Քնի մեջ լալիս, «մայրի՞կ» է կանչում:
Եվ ծիծաղում է, երբ վեր է թռչում:

## ԼՈՒՅՍԸ ՉԲԱՑՎԱԾ

Լույսը չբացված գառներիս կանչեմ,
Տանեմ հայրենի դաշտերը կանաչ,
Մայրիկիս համար ես ծաղիկ փնջեմ,
Հոտը տուն բերեմ ճամփով իմ նանաչ:
Իսկ ծաղիկները կարմիր և ճերմակ
Գորգի պես փռեմ մորս ոտքի տակ:

ԱՐԱՅԻԿ ԼՈՒՍԻՆՅԱՆ
*Երևանի N 24 գիշերօթիկ դպր. 7-րդ դաս. աշ.*



*Նկ. ՄԱՐԳԱՐԻՏ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ, 12 տ.*
*Չարենցավան*



# ԵՍ ՄԻՔԱՅԵԼՆ ԵՄ

Ես Միքայելն եմ: Բայց միայն հայրս է ինձ այդպես անվանում: Մայրիկը և մյուսները, պարզապես ասում են՝ Միքա:

Սովորում եմ հինգերորդ դասարանում: Մեր պարապմունքները սկսվում են մեկ անց կեսին: Ամեն առավոտ մայրիկը մի փոքր բացում է դուռը և կանչում՝ «Մի-քա՜...» Դա ավելի ստույգ է, քան զարթուցիչը և լրիվ բավական, որպեսզի ես անմիջապես բացեմ աչքերս: «Ի՞նչ, մայրի՛կ, ժամը ի՞նչ է»: Մայրիկն ինձ սովորեցրել է անկողնում պառկած չմնալ: Միանգամից վեր եմ կենում և հագնելով մարզազգեստը, վազում եմ պատշգամբ կամ թե բակ՝ գնդակ խաղալու: Դա իմ լիցքային վարժությունն է: Հետո լվացվում եմ և ծնողիս տակ հարմարեցնում ջութակը: Մայրիկն ինձ համոզել է, որ առոթի փնձակում հնչյուններն առավել մաքուր են ընկալվում և պարապելը շատ ավելի հեշտ է: Ես գիտեմ, որ հաճույք եմ պատճառում մայրիկին, նա հիմա խոհանոցում ինձ համար նախաճաշ պատրաստելով, մտքում հպարտանում է ինձնով, ժպտում, ասես ողջ աշխարհն է իրեն նայում: Նա ինձնից մեծ բան է սպասում, և երբ ես նախաճաշում եմ, ասում է. «Միքա՛, կե՛ր: Ջութակը մեծ ծանրաբեռնվածություն է օրգանիզմի համար»: Եվ ես ուտում եմ: Ես ամեն ինչ անում եմ մայրիկի ցանկացածի պես: Հարկավոր է դասերը սովորել՝ սովորում եմ, բոլորն անխտիր: Հետո, վերջապես, հանում եմ դրոշմանիշերս: Դրանք դասավորված են ինչպես հարկն է՝ տեսակներով: Միայն առաջին թերթի վրա դեռ շատ ազատ տեղ կա: Այստեղ միայն շներն են, այլ դրոշմանիշեր ես չեմ փակցնում առաջին էջում: Միայն հայրիկն է խորապես հասկանում իմ սերը շների նկատմամբ: Մայրիկը խոստացել է ինձ համար փոքրիկ մի թոլա գնել, բայց միայն այն դեպքում, եթե օրագիրս դադարի բամբասել: Ահա, դարձյալ հիշեցի օրագրիս մասին և տրամադրությունս փչացավ: Բոլոր տհաճությունների պատճառն օրագիրն է: Երբ մայրիկը ստորագրում է այն, սկսում է հառաչել և չի նայում ինձ: «Կարո՞ղ է պատահել, որ ես քո հարցում սխալվում եմ»,— ասում է նա: Եվ ես ամաչում եմ:

Ես բոլորից շուտ եմ դպրոց գալիս: Եվ առաջին հերթին ո՞ւմ եմ բարևում, Պուշկինին, Ալեքսանդր Սերգեևիչին: Ես նրան շատ եմ սիրում: Հիշում եմ, երբ մայրիկն ինձ առաջին անգամ դպրոց բերեց, տարավ Պուշկինի արձանի մոտ ու ասաց.

— Սա Պուշկինն է: Երևի հիմա նրա համար ձանձրալի է և շոգ: Բայց շուտով կգա աշունը և նա կաշխուժանա: Չէ՞ որ նա շատ էր սիրում աշունը:

Հիշում եմ, թե դրանից հետո ինչպես էի սպասում աշնանը: Ահա, արդեն հինգերորդ աշունը եկավ և ես նստել եմ ուղիղ նրա դիմաց, նստարանին ու չեմ կարողանում հասկանալ, թե ինչու էր Պուշկինը սիրում սառը աշունը... Ելնում եմ տեղիցս և բարձրացնելով օձիքս կամացուկ մտնում եմ դպրոց:



Նկ. ՎԻՐԱԳ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ, 7 տ.
Երևան

Դասարանում ես նստում եմ մեջտեղի լուսամուտի մոտ: Դրանից այն կողմ մարզական հրապարակն է... Հիմա թվաբանության դաս է: Ես դուրս եմ նայում լուսամուտից և թվում է, թե անձրևն ուզում է լվանալ, ջնջել մարզահրապարակի սպիտակ գծերը: Մնաս բարով, ֆուտբոլ: Վաղուց, դեռևս մայիսին ջոկատավարը եկավ ու ասաց, որ մենք պետք է զբաղվենք սպորտով: Նա ուրախացրեց մեզ, գրանցեց մեր ազգանունները, գնաց և այլևս չերևաց:

— Միքա՛,— արմունկս հրեց Նարինեն,— քեզ են հարցնում:

— Ինչի՞ մասին ես մտածում այդպես խորասուզված, որ տրված հարցն էլ չես լսում,— հարցրեց ուսուցչուհին:

— Ոչնչի,— թոթվեցի ես ուսերս և ուղղեցի ակնոցս: Բոլորը ծիծաղեցին, աղմուկ բարձրացավ:

— Ո՛չ լսում ես, ո՛չ կարող ես պատասխանել,

 ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

բոլորին ծիծաղեցնում ես, խախտում կարգապահությունը,— ուսուցչուհին պահանջեց օրագիրս, նկատողություն գրեց: Ես լռում եմ: Ես վիրավորված եմ, իսկ բոլորը ծիծաղում են:

Ավագ ջոկատավարն ասում էր, որ ես շատ նըման եմ Գրիբոյեդովին, իսկ Կարինեն ասում է, որ նման եմ դերասան Զբիգնև Ցիբուլսկուն: Ես ինքս կցանկանայի նման լինել Կամոյին:

Մեր դասղեկն է հայոց լեզվի ուսուցչուհին: Հիմա նրա դասը կլինի, վերջինը, իսկ հետո՝ տուն: Ես դարձյալ նայում եմ լուսամուտից դուրս, բայց լսում եմ: Հարկավոր է թարգմանել «կարգապահություն» բառը: Ես ձեռք բարձրացրի և ինձ հարցրին: Ոտքի ելա և ոչինչ չկարողացա պատասխանել, մոռացել էի: Իսկ հետո, երբ մեկ ուրիշը պատասխանեց, ես վիրավորանքից խփեցի ինքս իմ գլխին և գրեթե ամբողջովին սուզվեցի նստարանի մեջ: Բոլորը ծիծաղեցին: Ուսուցչուհին զայրացավ ու դարձյալ պահանջեց օրագիրս... Մի կարգին չեմ սովորում և խախտում եմ կարգապահությունը, իսկ տեսքից այնքան խելոք ու լավն եմ..

Ես հուսահատության մեջ էի: Գնում էի և ինքս ինձ վրա զայրանում: Չէի նկատում ո՛չ անձրևը, ո՛չ ջրափոսերը ոտքերիս տակ:

Մայրիկս ամեն ինչ զգում է: Նա անմիջապես հարցրեց.

— Միքա՛, ինչ-որ բա՞ն է պատահել: Դու քեզ վա՞տ ես զգում:

Ես գլուխս տարուբերեցի: «Ո՛-ո՛չ» և անցա իմ սենյակը: Հանեցի օրագիրս և առաջին անգամ չըկարողացա ներկայացնել մայրիկին: Սկսեցի թերթել, գրանցումները մերթ թռչկոտում էին իրար գըլխի, մերթ ձգվում, մերթ էլ կորչում թանաքաբծերի մեջ: Աչքի էին ընկնում «երկուսները»: Հանկարծ թվաց, թե «երկուսներն» սկսեցին աչքով անել ինձ և լսեցի, ինչպես օրագիրը խոսեց. «Վատ է, Միքա՛, բայց դեռ ամեն ինչ կորած չէ: Իմ էջերում կան և՛ «չորսեր», և՛ «հինգեր»: Միայն թե դու սկզբից

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



# ԽԼԱՀԱՎԸ

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*

Տայգան ողողված էր կաթնագույն լույսով: Չնայած գարուն էր արդեն, բայց ձյունը դեռ չէր հալվել, ծառերը դեռ սև էին, արահետները՝ թաց:

Անցնում էի ծանոթ արահետով: Հանկարծ իմ ուշադրությունը գրավեց մի մեծ, կարմրակատար թռչուն: Նա իջավ ծառից, ընկնող ծանր քարի նման, կանգնեց ձյան վրա, նայեց շուրջը և նյարդային ցնցումներով քայլել սկսեց: Ես ճանաչեցի՝ խլահավն էր, Ծայր Հյուսիսի տայգաներում ձմեռող ամենամեծ թռչունը: Սև փետուրներ ուներ, հպարտ, առասպելական կեցվածք: Նա վիզը ձգեց, ամբողջ մարմնով բարձրացավ, ուշի-ուշով զննեց շուրջը, կարծես ինչ-որ բանի էր սպասում, նայեց կապտավուն լեռներին և սկսեց ետ ու առաջ շարժվել: Այո՛, սպասում էր:

Ես լավ էի ճանաչում խլահավին, գիտեի նրա բնավորությունը: Չափազանց զգույշ թռչուն է, շատ է նկատում որսորդին, ժամանակին է զգում վրա հասնող վտանգը և երբեք հարյուր մետրից մոտ չի թողնում թշնամուն: Քանի՞ տարի էր, որ ես փորձում էի գոնե մեկ խլահավ խփել և չէր հաջողվում: Բայց այդ օրը նա իջավ ծառից ինձ այնքան մոտ, որ ես զարմանքից քարացա, անշարժացա և շունչս պահեցի: Հազիվ հինգ-վեց մետր լիներ մեզ իրարից բաժանող տարածությունը, ես նրան երբեք այսքան մոտ չէի տեսել, այն էլ՝ կենդանի: Բնազդաբար աչքերս փակեցի, որ նա ինձ չտեսնի, բայց նա ինձ տեսնել չէր ուզում, չէր նկատում: «Կո՞ւյր է, ի՞նչ է»,— անցավ մըտքովս: Նա քայլում էր հուզված, ամբողջովին լսողություն դարձած պտտվում նույն տեղում: Երբեմն նայում էր իմ կողմը, թվում էր, թե տեսավ. նկատեց արդեն և, ուր որ է, հիմա օդ կբարձրանա, բայց նա առաջվա պես անտարբեր էր, չէր նկատում, չէր զգում, չէր լըսում: Ես էլի մոտեցա, շատ մոտեցա, այնքան, որ արդեն կարող էի ձեռքով բռնել այդ ծայր աստիճան զգույշ թռչունին, որի զգուշության մասին լեգենդներ էին պատմում տայգայում: Անօրինակ դեպքը շշմեցրել էր ինձ, ես մոռացել էի նույնիսկ հրացանս: Այլևս չէի զգուշանում, մեր միջև կար-

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

սովորիր անել այն, ինչ պետք է, իսկ հետո միայն՝ ինչ ցանկանում ես... Իսկ դու ինչպե՞ս ես նվագում, Միքա՛... Նվագի՛ր, հա՞...»

Մայրիկը, հավանաբար, շատ զարմացավ, որ ես առանց խնդրանքի, առանց հիշեցման սկսեցի նվագել և այն էլ այսպիսի ժամանակ: Նա բացեց դուռն ու որոշելով, երևի, որ ես վճռել եմ Պագանինին դառնալ, ինձ չխանգարեց: Ոչինչ չհարցնելով ու չխոսելով, կամացուկ փակեց դուռը: Իսկ ես դեռ երկար նվագում էի, ապա կախեցի ջութակն ու պառկեցի քնելու: Սովորաբար ես այդքան շուտ չեմ պառկում: Իսկ քնից առաջ որոշեցի, որ վաղը կարթնանամ ժամը յոթին:

...Ես թռչում էի Մարս, թռչում էի Վեներա, շրջվում էի դեպի Լուսին: Ինձ ոչ մի տեղ չէին ընդունում...

— Միքա՛...

Մայրիկն է կանչում, բայց ինչո՞ւ այսպես վաղ: Չգիտեմ ինչու, ամբողջ մարմինս ցավում է, կարծես ընկել եմ մի տեղից... Իսկապես ընկել եմ մահճակալից: Ա՜յ քեզ երազ... Իմ գլխավերևում մահճակալի ցանցն է: Ուրեմն ես ոչ միայն ցած եմ գլորվել մահճակալից, այլև անցել եմ դրա տակ՝ սառել մնացել:

Ես դուրս սողացի մահճակալի տակից և անմիջապես նկատեցի սեղանին դրված բաց օրագիրս: Ներքևում մայրիկի ընթեռնելի ստորագրությունն էր: Նա երեկոյան ստորագրել էր: Ա՜խ, մայրի՜կ, մայրի՜կ, ինչպե՜ս եմ քեզ սիրում: Դու «երկուսներին» չես հավատացել՝ հավատացել ես ինձ:

Ես ուրախ եմ, և կանգնել եմ մեխվածի պես... Ես և՛ երջանիկ եմ, և՛ ամաչում եմ, ես ատում եմ ինձ և սիրում մայրիկին: Ես հպարտանում եմ մայրիկով: Առավոտվա սովորական լիցքային վարժությունից հետո, ջութակը տեղավորում եմ ծնոտիս տակ, մտքումս խոստանում մայրիկին... դառնալ Պագանինի:

ԿԱՐԻՆԵ ՎԵՐԴՅԱՆ

*Երևանի N 122 դպր. 10-րդ դաս. աշ.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●

ծես տարածություն չէր մնացել: Ես տեսնում էի նրա բորբոքված աչքերը, սրտի զարկերից ցնցվող կրծքի փետուրները, դողացող ոտքերը, բայց նա ինձ չէր տեսնում, նայում էր հեռավոր լեռներին, և, երբ այնքան մոտեցավ ինձ, որ ես ստիպված էի ետ քաշվել, հանկարծ հեռվից, սարերի կողմից լսվեց մի մեղմ, բայց ուժեղ, հմայող կոչ: Անմիջապես ձգվեց առաջ նման իմ խլահավը, բարձրացավ ճանկերի վրա և այնպես քնքշաբար կռնչաց, որ ինձ թվաց, թե այդպիսի մի ձայն հանելու համար նա իր սիրտը պոկեց: Ես զգում, լսում էի նրա տաք շնչառությունը: Նա քայլում էր և կանչում: Հեռվից եկող ձայնը սկսեց մոտենալ: Իմ խլահավը տենդով բռնվածի պես դողում էր ամբողջ մարմնով և կարծես մրմնջում ու տնքում էր ցավից: Քիչ հետո, աղմկոտ ինքնաթիռի նման վայրէջք կատարեց նրա չքնաղ ընկերուհին: Նրանք մի պահ նայեցին իրար և սկսեցին մոտենալ: Ես չէի համարձակվում' պարո՞ւմ էին նրանք, թե՞ հուզմունքից դողում: Գարնանային սառն օդը լցվեց ջերմությամբ: Ինչպիսի՜ քնքուշ և նուրբ ձայներ էին արձակում այդ մեծ, կապիտ թռչունները, ինչպե՜ս էին նայում և զգվում իրար: Անխոհեմություն թվաց ներկա գտնվել զգացմունքների այնքան սրտառուչ արտահայտություններին: Կամաց-կամաց հեռացա նրանցից:

Նրանք այդպես էլ ինձ չտեսան, չնկատեցին: Երբ արդեն անհրաժեշտ հեռավորության վրա էի, տեսա նրանց խելահեղ պարը և շատ ափսոսեցի հեռանալուս համար: Մի չքնաղ պար էր այդ՝ ձյան վրա, կաթնագույն լույսի մշուշում, այնհետ տայգայի հապաղայա բացատում:

Գարնանային թարմ օդը շոյում էր դեմքս: Տայգան լցված էր սիրով: Կռնչում էին թռչունները, միաձայն ու աղիողորմ ոռնում էին բնեռային գայլերը, օդն էին թնդացնում իրենց ծանր որոտով



Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ՆԱԶԱՐՅԱՆԻ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ●

խնկացնող սախաթները, որ ծառերի ճյուղերը ջարդելով, տանկերի նման խոյանում էին առաջ և ոչինչ նրանց կանգնել չէր կարող:

Ձյունը դեռ նստած էր, բայց գարուն էր արդեն: Գայլերը քաղցած էին, անքուն, ո՛չ ուտել էին ուզում, ո՛չ հանգստանալ, մոռացած վտանգն ու զգուշությունը՝ թափառում էին կիրճերում և լեռներում, իրար վրա չէին հարձակվում, սնունդ չէին փնտրում: Սիրո զգացմունքը տարին մեկ անգամ էր տրվում Տայգայի գայլերին ու թռչուններին, տրվում էր փոթորիկների, հեղեղների ուժով, շատ կարճ ժամանակում, դրա համար էլ այդ օրերին նրանք հրաժարվում էին ամեն ինչից, նույնիսկ կյանքից, որպեսզի չկորցնեն սիրո ամենաարանչելի այդ միակ պահը: Նրանք կանչում էին իրար թավշե ձայներով, կանչում էին մեղմորեն, քնքշագին, լացով ու աղաչանքով էին կանչում իրար:

Խլահավեր են կոչվում այդ մեծ և գեղեցիկ թռչունները, որ ապրում են Ծայր Հյուսիսում, մեծ գետերի ափերին, խուլ և մթին տայգաներում, քառասուն աստիճանից ավելի սառնամանիքներում և մի երկու ամիս են միայն տաք օրեր տեսնում և, երբ գալիս է նրանց սիրո, մերձեցման շրջանը՝ խլանում են, ոչինչ չեն լսում, իրենց զույգերի կոհինչից բացի, ոչինչ չեն տեսնում, իրենց ընկերուհուց կամ ընկերոջից զատ, դրա համար էլ նրանց խլահավեր են կոչում: Սիրո պահերին խլանում են այդ թռչունները, նրանց ձեռքով կարելի է բռնել:

Ես անցնում էի իմ արահետով, և սիրտս տրոփում էր գարնան խոլորձով: Գարունը կարճ է այս Ծայր Հյուսիսում, հավերժական սառնամանիքների այս երկրամասում, բայց էլի գարուն է:

# ՀԱՎԱՏԱՑՅԱԼԻ

*ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ*

*Մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը իր միջադեպերով հարուստ կյանքում ինչե՛ր ասես չի տեսել, ի՛նչ երկրներում ասես չի եղել: Չորս աշխարհամասեր նա ոտնատակ է տվել, բոլոր խոշոր ու փոքր ծովերում նավարկել, աշխարհի բոլոր նշանավոր ջրվեժների պատառին լուսանկարվել, բոլոր կենդանի, նույնիսկ անհետացած ժողովուրդների ճաշերից ճաշակել է, նա գիտի բոլոր վայրի ցեղերի պարերը պարել, գիտի անչափ-անսահման լեզուներով խոսել ու երգել:*

*Այդպես են բոլոր մեծ ճանապարհորդներն առհասարակ, նրանց կյանքը լի է արկածներով, հրաշքներով, անհավատալի պատմություններով: Նրանք կարող են այնպիսի բաներ պատմել, որ մազերդ գլխիդ բիզ-բիզ կկանգնեն, բայց նրանք այդ չեն անում, որովհետև երեխաների մազերը գլխներին բիզ-բիզ կանգնեցնելը պատիվ չի բերում մեծ ճանապարհորդներին. ի՞նչ կարիք կա կարհուրելի պատմություններով փչացնել երեխաների սանրվածքը:*

*Ճիշտ է, Մարկոս-Կիրակոսը ոչ մի հայտնագործություն չի արել, նրան բախտը չէր ժպտում այդ կողմից. նախ՝ նա մեծ հայտնագործություններից շատ ուշ էր ծնվել, ապա թե վերջին ժամանակներում տիեզերքից կատարվող հետազոտությունները խապառ ի չիք դարձրին երկրագնդի մոլորակի վրա որևէ, ամենաչնչին հայտնագործություն անելու հույսը: Անուամենայնիվ Մարկոս-Կիրակոսը դեռ հավատում է, որ կգտնի քարտեզի վրա դեռևս չնշված մի չնչին բլրակ, որի գագաթը այնուհետև կկոչվի իր՝ Մարկոս-Կիրակոսի անունով, կամ մի կորած-մոլորած կղզյակ կհայտնագործի ծովերում դարձյալ իր անունով կնքելու համար: Բոլոր մեծերի նման նրան ևս մտահոգում է իր անմահության հարցը, և այս հանգամանքը մի քիչ գցում է մեծ ճանապարհորդի տրամադրությունը: Չնայած դրան, նա միշտ էլ մեծ հաճույքով է պատմում երեխաներին իր տեսածի ու լսածի մասին:*

*Այսպես ուրեմն, պատմում է մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը, որ Իտալիայի Միլանո քաղաքում ապրում էր պարոն Թոչինո անունով մի մարդ և այդ մարդը կրոնավոր էր, ինչպես դա երևում է նրա պարոն անվանումից:*

*Նա սև էր հագնում, շատ աստվածավախ էր ու շատ աստվածասեր ու ապրում էր բարձրաբերձ շենքի քսանհինգերորդ հարկում: Առավոտյան նա պետք է շուտ հասներ ժամերգության, եկեղեցում իր ծառայությունը պետք է աներ, բայց երբեմն շենքի վերելակը չէր աշխատում, խափանվում էր, և պարոն Թոչինոն ստիպված քսանհինգ հարկ ոտքով էր իջնում: Մինչ նա իջնում էր՝ հավատացյալները շատ սպասելուց ձանձրանում, թողնում գնում էին: Պարոն Թոչինոն գալիս տեսնում էր՝ եկեղեցին դատարկ է:*

*Պարոն Թոչինոն շատ մտածեց-մտածեց, որոշեց մի ելք գտնել, որովհետև վերելակի կանոնավոր աշխատանքի ոչ մի հույս չկար: Վերցրեց գիտական գրքեր, թրթրեց, փնտրեց և բարձրություններից իջնելու բոլոր միջոցները ծանրութեթև անելուց հետո՝ կանգ առավ պարաշյուտի վրա: Օդապարիկից նա խակույն հրաժարվեց, որովհետև օդապարիկը միշտ ուռած-փչված է լինում, իջնելուց հետո անհարմար է փողոցներով քարշ*

# ՎԵՐՋԻՆ ԹՌԻՉՔԸ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

տալը, մինչդեռ պարաշյուտը կարող ես հովանոցի նման հավաքել, դնել թևիդ տակ ու շարունակել ճանապարհդ:

Այդ պաղրեն գիտական արտակարգ մտքի տեր մի մարդ էր իրականում, անմտորեն իրեն տվել էր եկեղեցուն, մինչդեռ կարող էր գիտությանը մեծ ծառայություններ մատուցել:

Այդպես էլ եղավ. երկար չարչարվելուց հետո, նա հնարեց արտակարգ մի պարաշյուտ, խանութից գնեց մի քանի հովանոց և աերոդինամիկայում դեռևս չհայտնաբերված մի օրենքի իմացությամբ այնպես միմյանց կապակցեց հովանոցները, որ քսանհինգերորդ հարկից հեշտորեն իջնում էր գետնին, փափուկ վայրէջք կատարում բակում, միայն վերջին պահին մի թեթև թփփում էր գետնին: Բայց դա ոչինչ, նա իսկույն ոտքի էր ելնում, շորերը թափ տալիս և գնում իր եկեղեցին:

Պետք է ասել, որ Իտալիայում շատ հեշտ են հավատում հրաշքներին: Երբ առաջին անգամ օդում տեսան սևազգեստ պաղրեին՝ բոլորն ապշեցին, կարծեցին երկնային ինչ-որ արարած է, իրենց հավատով՝ հրեշտակ, սատանա և թռչելու ընդունակ այլ անգո էակների անուններով հորջորջվող: Բայց երբ թփփաց գետնին և իսկույն ոտքի ցատկեց, տեսան, որ դա պաղրե Թոչինոն է:

. Ապա այդ հրաշքը կրկնվում էր ամեն օր, ճիշտ նույն ժամին բարձրաբերձ շենքի վերին հարկում հայտնվում էր մի սև կետ, գնալով մեծանում, մեծանում, և ահա ինքը՝ պաղրե Թոչինոն կանգնած է ամբոխի առաջ:

Շատ խնդրեցին, թախանձեցին բացատրել, թե ինչպես նա հայտնաբերեց այդ պարաշյուտը. չէ՞ որ դա գիտության ու տեխնիկայի աննախադեպ մի հայտնագործություն էր: Մանավանդ շատերն էին ցանկանում քսանհինգերորդ հարկից իջնելու որևէ միջոց ունենալ:

— Ոչ մի հայտնագործություն,— ասում էր պաղրեն,— ի՞նչ եք գլուխներդ գցել գիտություն հա՛ գիտություն, տեխնիկա հա՛ տեխնիկա: Մի՞թե առանց տեր աստծո աշխարհում որևէ բան առհասարակ հնարավոր է: Օ՜, կաթոլիկնե՛ր, իսկն եմ ասում ձեզ, իմ աղոթքների զորությամբ է, որ ես այդ բարձրությունից այսպես բարեհաջող իջնում եմ գետնին: Ես վերևում նախ աղոթում եմ մեր փրկարար աստծուն, միայն հետո ինձ նետում քսանհինգերորդ հարկից: Ողջ վայրէջքի ժամանակ ես զգում եմ մեր տիրոջ հոգատար ձեռքերի հպումը: Նա է ինձ այսպես խնամքով իջեցնում գետնին, և ոչ թե գիտությունը կամ տեխնիկան:

Շատ հավատացյալների այլ բացատրություն պետք էլ չէր, իսկ ոմանք ասում էին.

— Գիտությունն ու տեխնիկան ինչ հրաշալիքներ էլ ստեղծելու լինեն, այս խավարամիտները դարձյալ աստծուն պիտի վերագրեն:

Բայց, իհարկե, զարմանալին այն էր, որ այդքան հնարամիտ մի մարդ միաժամանակ այդքան խավարամիտ էր:

— Նա իր աստծուն ավելի շատ էր հավատում, քան իր սեփական, ես կասեի՝ հանճարեղ մտքին,— իր պատմությունն անելիս՝ միշտ ասում էր մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը:





# ՇՈՒՇ



Հեքիաթի մեջ
Կար մի գյուղակ,
Ու գյուղակում՝
Մի աղջնակ:
Մի առավոտ աղջիկը այդ
Երբ անուշիկ քնած էր դեռ,
Մայրը գնաց սարը դեմի,
Որ բանջարներ քաղի բերի:

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Աչքը բացեց Շուշանիկը,
Ձայնեց, չկար իր մայրիկը,
Շորը հագավ, ելավ տնից,
Ելավ գնաց, մոր ետևից
Ո՞վ կասի՝ շատ գնաց, թե քիչ,



*Ապա նա հառաչելով ավելացնում էր, որ, այո՛, այդպիսի արտառոց դեպքեր պատմությանը խորթ չեն. օրինակ՝ Նյուտոնի նման մեծագույն գիտնականը, որ հայտնագործել էր տիեզերքի օրենքները, միաժամանակ հավատում էր աստծուն: Հետաքրքիր էր, թե որտե՞ղ էր նա աստծուն տեղավորում ամեն ինչ գիտական օրենքներով բացատրվող տիեզերքում:*

*Ինչ-որ է:*

*Մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը Իտալիայի Միլանցո քաղաքում գտնվելու ժամանակ մի քանի անգամ ականատես է եղել պարոն Թոշինոյի հրաշք թռչող վայրէջքներին: Ամեն անգամ գետնին իջնելով պարոնն հավաքվածներին ասում էր, որ գիտությունն ու տեխնիկան այստեղ գործ չունեն, ինքն իջնում է աղոթքների շնորհիվ, որ այս ամենի մեջ աստծո մատը խառն է:*

*— Իսկ գիտությունն ու ժամանակակից տեխնիկական գյուտերից հանե՛ք,— ասում էր նա,— սա ո՞ր դարն է, որ նման անմիտ բաներին հավատ եք ընծայում:*

*Այսպես, նա շատ հավատացյալների կրկին «եկեղեցու գիրկը դարձրեց», ինչպես ինքն էր ասում:*

*Երբեմն վայրէջքների ժամանակ քամի էր լինում, և, պատմում է մեծ ճանապարհորդը, պարոնն քամու բերանն ընկած՝ գնում, գնում և վայրէջք էր կատարում հենց եկեղեցու բակում: Իրոք, հրաշքի նման մի բան էր, ողջ Միլանցո քաղաքը բան ու գործ թողած, բերանները բաց երկնքին էին նայում:*

*Շատ խնդրեցին թույլ տալ զարմանալի պարաշյուտի կառուցվածքը ուսումնասիրել, չէ՞ որ պարոն Թոշինոն պարզապես մեծ գյուտ էր արել: Մինչդեռ այդ լուսավոր գլուխը միշտ նույն խամախամիտ պատասխանն էր տալիս.*

*— Աստծուց է: Ես կարող եմ առանց այդ անհեթեթ պարաշյուտի էլ իջնել:*

*Մեծ ճանապարհորդն ասում է.*

*— Այդ ժամանակ ես կանգնած էի բազմության մեջ, ճեղքեցի ամբոխն ու առաջ գնալով, իտալերեն ասացի. «Մեծ խամախամիտ կամ մեծ լուսավորյալ, ասա՛ ինձ՝ ո՞րն ես դու, ցո՛ւյց տուր: Եթե դու կարող ես միայն աղոթքով, առանց պարաշյուտի ապահով իջնել այդ բարձրությունից, ես հենց այստեղ, տեղնուտեղը կաթոլիկ կդառնամ, որովհետև ամեքի առաջ*




*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Գնաց-գնաց ու մեկ էլ ինչ...
Ճամփան կապող մի խոր ձորակ,
Ձորում՝ վտակ մի սառնորակ:
Խենթ աղջիկը շատ չխորհեց,
Կամրջակը էլ չորոնեց,
Հանեց հագից շորը իր չիթ,
Մտավ ջուրը սառն ու վճիտ:
Մեկ-երկու քայլ արեց անխոս,
Տեսավ ցածում մի ծեր ձկնորս,
Շատ ամաչեց, դողաց տեղում,
Ծաղիկ դարձավ մնաց ջրում...
Մինչև հիմա ջրերում էլ ապրում է նա,
Եվ կոչվում է Ջրաշուշան:



մեծ աստծու գործություն, քան այդ հրաշքը՝ չի կարող լինել աշխարհում»:

Ժողովուրդը հավանություն է տալիս մեծ ճանապարհորդի առաջարկին:

Եվ պարոն Թոշինոն ասում է.

— Լա՛վ, զավակնե՛րս, ես հիմա այստեղ եմ թողնում այս ծիծաղելի պարաշյուտը, բարձրանում եմ վերև, քսանհինգերորդ հարկից ցատկում եմ ցած և իմ աղոթքի ուժով ապահով իջնում եմ գետին, եթե դուք այդ եք ուզում:

Նա ներքևում է թողնում պարաշյուտն ու գնում: Մինչ կերևար վերին հարկում, ներքևում ամբոխը գլուխները վեր պարզած, շնչասպառ սպասում էին: Շատ հավատացյալներ էլ աղոթում և ալելույա էին կանչում:

Վճռական րոպեներ էին, այդ օրը մեծ ճանապարհորդը կա՛մ այլևս հավիտյան կաթոլիկ պիտի դառնար, կա՛մ երբեք, մինչև կյանքի վերջը կաթոլիկ չպիտի դառնար:

Ահա վերջապես քսանհինգերորդ հարկի պատշգամբից երևաց սև կետը: Հեռադիտակով նայողները տեսան, որ այնտեղ պարոն Թոշինոն ձեռքերը վեր տարածած աղոթում է, ուր որ է կցատկի:

Հինգ րոպե նա աղոթեց, հինգ րոպեն հինգ դար թվաց սպասողներին: Ապա տեսան, որ պարոնն ձեռքերը տարածեց թռչունի նման և իրեն նետեց ներքև:

Ընդամենը երկու թե երեք վայրկյան տևեց այդ վայրէջքը, պատմում է մեծ ճանապարհորդը: Անմարդկային ձայնով աղաղակ հանելով՝ նա զահավիժեց ու բախվելով գետնի վրա թողած պարաշյուտին, ջախջախեց ու ինքն էլ իսկույն շունչը փչեց:

Նրանք հետագայում պնդում էին, որ իջնելիս նա ոչ թե աղոթում, այլ ամենասոսկալի խոսքերով հայհոյում էր աստծուն, որ լքել էր իրեն իր կյանքի թերևս ամենադժվարին այդ ժամին:

Այսպես, նա իր մահով ապացուցեց, որ ոչ մի երկնային զորություն էլ չկա, պարզապես կա գիտություն և տեխնիկա:

— Պարոն Թոշինոն չարժեր իր հայտնագործությանը,— իր պատմությունը ամփոփում էր մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը,— միայն շատ ափսոս, որ իր հետ ջախջախվեց նաև այդ զարմանալի պարաշյուտը:

Այս պատմության մեջ, իրոք, միակ ափսոսելու բանն այդ պարաշյուտն է:



ՎԱՐԴԱՆՅԱՆ ԶՎԱՐԹ
գյուղ Գեղհովիտ

# ՈՒՍՄՈՒՆՔԻՉՆ ՈՒ

Մի քանի տարի առաջ Երևանի Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների ինստիտուտն ավարտելով, նա աշխատանքի նշանակվեց Մարտունու շրջանի Գեղհովիտ գյուղում: Շատ ժամանակ չանցավ և հանրապետության արվեստասերների ուշադրությունն իրենց վրա բևեռեցին հեռավոր Գեղհովիտի երեխաները: Երիտասարդ մանկավարժ Կ. Թումասյանի շնորհիվ Գեղհովիտի տաղանդավոր երեխաների ստեղծագործությունները հանդես եկան աշխարհի տարբեր երկրների ամենատաղանդավոր երեխաների ստեղծագործությունների հարևանությամբ, իրենց կատարողական ուժով, համոզչությամբ ու գույների նաշակով զարմանք պատճառելով անուն հանած պատկառելի նկարիչների, արվեստագետների և օտար հյուրերի:

Երիտասարդ ուսուցիչը, որ նոր էր ոտք դրել Գեղհովիտ, մի օր դուրս էր եկել նկարելու բնության զմայլելի անկյուններից մեկը: Նա ինքնամոռաց նկարում էր, մեկ էլ հանկարծ թիկունքից լսեց մանկական դժգոհ մի ձայն... «Մի՛ փչացնի բնությունը»... Երիտասարդ մանկավարժը, որը նաև շնորհալի նկարիչ է, տակնուվրա է լինում: Նա որոշում է զբաղվել Գեղհովիտի երեխաների էսթետիկական դաստիարակությամբ, բացատրել նրանց արվեստի էությունը, ինչպե՞ս նկարել ու ընկալածը արտահայտել գույների լեզվով: Նույն երեկոյան նա հայտարարություն է փակցնում դպրոցում՝ նկարչական խմբակ բա-



ՄԱՐԳԱՐՅԱՆ ՌԱԶՄԻԿ, 11 տ.
գյուղ Գեղհովիտ



ՇԵՐՈՆ ԳՈՏՈՆ, 7 տ.,
Անգլիա



ՍԻԴՎԻՅԱ ՕՐՈՒՋԵԿՈՎԱ, 7տ.
Չեխոսլովակիա



ԼՈՌԵՆ ԴԵՅՎԻ, 10 տ.
ԱՄՆ



ԶԴՐԱՎԿՈ ՊԵՆՉԵՎ, 13 տ.
Բրազիլիա



ՌՈՒՋԻՆԱ ԿՈՒՄԻԿՈ, 11 տ.
Ճապոնիա



ԽԱՉԱՏՐՅԱՆ ՏԻԳՐԱՆ, 14 տ.
գյուղ Գեղհովիտ

# ԻՐ ՍԱՆԵՐԸ

տեղծելու մասին: Այդ խմբակում ընդգրկվելու ցանկություն են հայտնում դպրոցի բոլոր երեխաները՝ մեծ թե փոքր: Նրանք աշխարհում աչք բացելու օրից լսել էին ու գիտեին ժողովրդական զրույցներ, հեքիաթներ, ավանդություններ և մի փոքրիկ կայծը բավական էր բոցավառելու համար նրանց երևակայությունը... Հաջողությունն անսպասելի չափով մեծ էր երիտասարդ ուսուցչի համար: Սաների ստեղծագործությունները զարմանք ու հիացմունք պատճառեցին նախ իրեն, նա դրանց վրա հրավիրեց մասնագետների ուշադրությունը: Գեղհովիտի երեխաների ստեղծագործությունները մեծ հաջողությամբ ցուցադրվեցին Երևանի մանկական պատկերասրահում:

Անկարելի է գերագնահատել երիտասարդ նկարիչ ու մանկավարժ Կամո Թումասյանի վաստակը Գեղհովիտ գյուղի երեխաների ստեղծագործությունների հաջողության գործում: Լինելով նրբանկատ ու զգայուն արվեստագետ, նա կարողացավ կարճ ժամանակում թափանցել իր սաների ներաշխարհը և երևան հանել նրանց մեջ ապշեցուցիչ ունակություններ: Արդյունքը եղավ այն, որ Գեղհովիտ գյուղի երեխաները դարձան միջազգային նկարչական ցուցահանդեսի մասնակիցներ. Գեղհովիտ գյուղի երեխաներին տրվեց մեծագույն պատիվը, այն է՝ միջազգային այդ ցուցահանդեսում ներկայացնելու ՍՍՀՄ մանկական նկարչությունը:

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*



ՏԱԴԻՈՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ, 12 տ.
Երևան



ԳԵՎՈՐԳՅԱՆ ԱՆԺԵԼԱ, 12 տ.
գյուղ Գեղհովիտ



ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՀԱՅԿ, 14 տ.
գյուղ Գեղհովիտ



ԱԼԱՎԵՐԴՅԱՆ ՇՈՒՇԱ, 14 տ.
գյուղ Գեղհովիտ

## ԸՆԿԵՐԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԶԱՆՑԻԿՆԵՐԸ

Կարծես երեկ էր... Ծնողների ձեռքերը բռնած, պայուսակը գետնին քսելով ու սրունքներին քսելով, թիթեռ-ժապավենով ու թիթեռ-փողկապով, դպրոց եկան: Հավաքվեցին դպրոցի բակում, զարմացած, ուրախ, հուզված, հանդիսավոր լսեցին շնորհավորող ավագների խոսքը, հետո բաց թողեցին ավագների ձեռքերը, ծնողները բակում մնացին՝ խրախուսող ժպիտներով, իրենք շուտ-շուտ ետ նայելով՝ մտան շարքի մեջ ու դպրոցի դռնից ներս մտան: Մտան դասարան ու, իրար զննելով, անհամար նստեցին անսովոր չոր նստարաններին: Տղաները զարմացան, որ այսքան քիչ են աղջիկները, աղջիկները զարմացան, որ այդքան շատ են տղաները:

Հետո զգաստ նստել սովորեցին, ձեռք բարձրացնել, հարցեր տալ ու հարցին պատասխանել սովորեցին, իմացան Մաշտոցի անունն ու նկարելով գրեցին Ա, Բ, Գ և բոլոր 39 տառերը:

Եվ հիմա, երբ 6 տարի անբաժան են 22 տղաներ ու 11 աղջիկներ, առաջին օրերի մասին, անգամ այն օրերի մասին, երբ 4—5-րդ դասարանում էին, ասում են՝ «երբ փոքր էինք...» Եվ վաղն էլ այս օրերի մասին կասեն՝ «երբ փոքր էինք», որովհետև ամեն օր աշխարհը մի նոր գաղտնիքի դուռ է բացում, նրանք օր-օրի մեծանում են, գիտելիքին գիտելիք է գումարվում, այբբենարանը փոխարինեցին մայրենի լեզվի դասագրքով, բազմապատկման աղյուսակից անցան անհայտներով հավասարումներին, պիոներական փողկապը վաղն էլ կոմերիտական կրծքանշանով կփոխարինեն... Եվ անընդհատ մտերմանալով, կապվելով իրար և ուսուցիչներին, սիրելով միմյանց և ուսուցիչներին, այնքան, որ կիրակին, այնքա՜ն սպաս-

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



# ԿԱՐՄԻՐ ՓՈՂԿԱՊՆԵՐԻ ԾՓԱՆՔԸ

*Երևանի № 100 դպրոցի մուտքի մոտ, չարաճճի ժպիտները դեմքերին, խորհրդավոր քչփչում էին երկու աղջնակ: Նրանք կարմրատակել էին հուզմունքից ու զգուշորեն գրկել գույնզգույն փուչիկների նմանվող հսկայական փաթեթները, որոնք այնքան մեծ էին, այնքան գունեղ և խորհրդավոր, որ թվում էր, ուր որ է, կթռչեին երկինք՝ իրենց հետ տանելով ժպտերես ու հուզված աղջիկներին:*

*Մի փոքր անց, ես դեռ չէի*

ված կիրակին անցկացնում են երկուշաբթի օրվա սպասման մեջ, իսկ արձակուրդներից հետո ինչպիսի՜ անհամբերությամբ են շտապում ժամ առաջ միմյանց տեսնելու, պատմելու՜, պատմելու՜, անվերջ պատմելու՜:

Ինչպես ամեն մի դասարան, մայրաքաղաքի Կրուպսկայայի անվան դպրոցի 6-րդ «Ա» դասարանն էլ ունի իր բանաստեղծը, ֆիզիկոսը, մաթեմատիկոսը, մարզիկն ու նաև... իր տիեզերագնացը: Սուրիկը դասարանի «առաջին տիեզերագնացն» է, առաջին տիեզերագնացը դասարանից: Դասարանը կամովին, համերաշխորեն նրան է զիջել այդ պատիվը: Սուրիկը լրջորեն նախապատրաստվում է տիեզերագնաց դառնալ: Նախ և առաջ գերազանց է սովորում ֆիզիկան ու մաթեմատիկան: Դա նրան, իհարկե, քիչ է թվում և տանը հանձնարարված խնդիրների կրկնակին է լուծում: Դպրոցը ավարտելուց հետո, կընդունվի ավիացիոն ինստիտուտ: Ինչո՞ւ հատկապես ավիացիոն, որովհետև ուզում է տիեզերանավի հրամանատար դառնալ:

Իսկ համադասարանցիները հավատում են նրան: Ընդհանրապես 6-րդ դասարանում հավատում են յուրաքանչյուրի կարողությանը և հարգում են ամեն մեկի նպատակը:

Արթուրը դժվար է յուրացնում մաթեմատիկան: Պատահում է, չէ՞, որ մեկնումեկը չի կարողանում հաղթահարել որևէ առարկա: Հո չե՞ն սպասելու, որ ինքը օգնություն խնդրի, շտապում են օգնության: Մի առարկայի պատճառով թույլ չեն տա, որ իրենց չեմպիոնը՝ սեղանի թենիսի «Բուրեվեստնիկի» չեմպիոնը, մնա նույն դասարանում: Եվ հետո, երկրորդ տարին նույն առարկան կրկնելն էլ կարող է չօգնել: Իսկ միջավա՞յրը, նոր միջավայրը: Երկտարեցին ե՞րբ կմերվի նոր դասարանին, ինչպե՞ս կձևավորվեն նոր հարաբերությունները: Բացի այդ, 6-րդ «Ա»-ն չի պատկերացնում, որ իրենցից որևէ մեկը կմնա նույն դասարանում, բաժանվի իրենցից: Հիմա ինչպիսի՜ ցավով են հիշում, որ երկու տարի առաջ համադասարանցիներից մեկը տեղափոխվեց ուրիշ դպրոց:

Բայց դասարանին մի վշտացնող բաժանում էլ է սպասում: 7-րդ դասարանից տեղափոխվելու են դպրոցի երկրորդ մասնաշենքը և բաժանվելու են ուսուցիչների մեծ մասից: Նրանք բոլորը խորին ափսոսանքով են խոսում այդ մասին և պատրաստում են հրաժեշտի հանդես:

Ինչ-ինչ, բայց 6-րդ «Ա»-ն կարողանում է հանդեսներ կազմակերպել: Անցած տարի, հաղթանակի 30-ամյակին նվիրված հանդեսն այնքան հաջողված էր, որ կրկնվեց ևս երկու անգամ: Այդ հանդեսը նրանք կազմակերպել էին իրենց սիրելի ուսուցչուհու՝ Էմմա Կարապետյանի հետ:

Իսկ ինչո՞ւ են վեցերորդցիները սիրում Էմմա Արտաշեսովնային: Որովհետև, ասում են նրանք, «նա բացահայտում է մեր հնարավորությունները և ցույց տալիս ուրիշներին»: Կարելի է լրացնել, որ ցույց է տալիս հենց իրենց՝ աշակերտներին և իրենք տեսնում, ճանաչում են սեփական արժանիքները: Հետևաբար նրանք սիրում են ուսուցչուհու դասավանդած առարկան՝ ռուսերենը: Եվ նրանց միահամուռ կարծիքով, սերը առարկայի հանդեպ ուղղակիորեն կապված է ուսուցչուհու հանդեպ տածած սիրո հետ: Վեցերորդցիները նույնքան էլ սիրում են հայերենն ու պատմությունը: Իսկ մյո՞ւս առարկաները: 6-րդ «Ա»-ն այն դասարանը չէ, որ չիմանա, որ առարկան չսիրելը պատճառ չէ, որպեսզի այն չսովորես: Օրինակ, Նունեն, «Չեմ սիրում ֆիզիկան ու մաթեմատիկան» ասելով՝ զարմացրեց դասղեկին: Չի սիրում, բայց այդ առարկաները գերազանց է սովորում: Եթե վեցերորդցիները առարկաները սիրել-չսիրելու սկզբունքով սովորեին, այսօր առանց երկտարեցու վեցերորդ դասարան չէին հասնի:

Սա արդեն, այս ամբողջականությունը, նրանց սկզբունքն է. ձեռնարկած բանը կիսատ-պռատ չեն անում: Վերջերս, երբ դպրոցը թղթի թափոն էր հավաքում, նրանց ջոկատը հանձնեց 400 կիլոգրամ, այսինքն՝ դպրոցի հանձնած թափոնի $^{1}/_{5}$-ը:

Դասարանի ուժը միաբանության մեջ է: 6-րդ «Ա»-ում գերազանցիկներ չկան, բայց բարձր է դասարանի ընդհանուր առաջադիմության մակարդակը:

Ճիշտ դիպուկ ասաց Իսախանյան Սամվելը. «Մեր դասարանում գերազանցիկներ չկան, բայց դասարանը կարելի է կոչել ընկերասիրության գերազանցիկ»:

*ՎԱՆԻԿ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ*

հաացրել ծանոթանալ պիոներաենյակին, դուռը բացվեց և ներս վազեցին նույն աղջիկները։

Ընկե՛ր Թերեզա, ընկե՛ր Անահիտ, թղթի թափոն ենք բերել։

Ջոկատավարուհիները մեղմ ժպտացին։ Իսկ հետո պարզվեց, որ 6-րդ Գ դասարանում միանգամից երկու հոգու՝ Գագիկի ու Սուսաննայի ծննդյան օրն է և Համիկն ու Անահիտը նրանց շնորհավորել են, անհավանականորեն մեծ ու գունեղ փաթեթներով փոքրիկ-փոքրիկ նվերներ են տվել, իսկ թուղթը բերել են հանձնելու։ Եվ այդ ուրախ դեպքին մասնակցած թուղթը ծանր ու մեծ իր տեղը գրավեց թղթի թափոնի արկղում, որ սկսի մի երկար ճամփորդություն, խառնվի «Միլիոն՝ հայրենիքին» մրցույթով հավաքված տոննաներով թղթերին։ Այդ թղթերի մեջ երևի արդեն չի լինի Մամիկոնի հանձնած 150 կգ. թուղթը, որի համար նա արժանացավ դպրոցի և շրջանային ԼԿԵՄ կոմիտեի պատվոգրերի։ Մամիկոնի հանձնած թղթերը հիմա որտե՞ղ են... Գուցե նրանց վրայի քարտեզներով նավապետնե՞ր են առաջնորդվում կամ շիկահեր մի մանչուկ աղավնի՞ է նկարում։ Գուշակելը դժվար է, բայց որ թուղթը նորից կյանք է ստացել, դրանում ոչ մի կասկած։ Երեխաները թղթի թափոն ու մետաղի ջարդոն են հանձնում, իսկ ստացված փողը, քանի որ գտնում է, բարի ու խելացի տեր, սկսում է հրաշքներ գործել։ Այն դառնում է նվիրատվություն, «Խաղաղություն և համերաշխություն» երթուղին պատվով կատարող, «Ճայ» բարեկամության ակումբի միջոցով հաղթահարում է Երևանի ու Հանոյի միջև ընկած սահմաններն ու կիլոմետրերը և օգնում Վիետնամցի պիոներներին՝ իրենց համար պալատ կառուցել։ Կամ դառնում է հրավեր և օգնում է «Իմ հայրենիքը՝ ՍՍՀՄ» երթուղով ընթացող պիոներներին՝ հյուրընկալել Մոսկվայի ու Խարկովի դպրոցականներին, սովորել նրանցից և սովորեցնել նրանց։ Դպրոցի բարեկամության մատյանում անգլերեն, ռուսերեն, հայերեն ու գերմաներեն գրված տպավորությունները ու մաղթանքներն այն-քա՞ն լավ հիշողություններ են արթնացնում, այնքա՞ն . լավ արարքների են դրդում։ Եվ կամ այդ փողը հայ պիոներներին հնարավորություն է ընձեռում նստել գնացք և հասնել Մոսկվա և այնտեղ մասնակից լինել № 42 դպրոցի ամանորյա հանդեսին։ «Գեղեցիկի աշխարհում» երթուղուն մասնակցող հայ պիոներներն իրենց հետ Մոսկվա տարան հայկական հույզիչ երգերն ու հմայիչ պարերը։ № 100 դպրոցի պարի ու ակորդեոնի խմբակները, երգչախումբը, որոնք մասնակցել են դպրոցական ու շրջանային շատ մրցույթների, կարողացան ուրախացնել նաև իրենց մոսկվացի բարեկամներին։ Իսկ այստ ժամանակ պիոներները ծանոթանում էին մայրաքաղաքին, այցելում թանգարաններն ու պատկերասրահները։

Կոմունիստներից օրինակ վերցնելով՝ պիոներները իրենց հերթին օրինակ են ծառայում հոկտեմբերիկներին։ 5-րդ «Ա» դասարանն իր կազմակերպած առաջինի տոնին նաև ծնողներ և ուսուցիչներ էր հրավիրել։ Շատ ուրախացան նրանք, տեսնելով, թե ինչ սիրով ու արվեստով են կարողանում պիոներները բանաստեղծություններ կարդալ, երգել, պարել։ Պիոներները հոկտեմբերիկներին գրքեր նվիրեցին։ Իսկ 3-րդ դասարանցիները պիոներիայի շարքերն անցնելու կապակցությամբ ստացան պատվավոր ու պարտավորեցնող նվեր՝ նրանց հանձնվեց պիոներ-էստաֆետը։

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ



# ԼՈՒՍԱՏԻՏԻԿՆԵՐ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Մոլորված կանաչ ու չոր խոտերում,
Արճամարճելով մութը գիշերվա,
Նրանք միամիտ երկվանկ երգերով
Աշխարհին իրենց լույսն են նվիրում
Եվ մանուկների թարթիչների մեջ
Կապտավորներ են դառնում երկնքի։

Նկ. ԿԱՐՈ ԹՈՄԱՍՅԱՆԻ

## Թևավոր խոսքեր

### ՔԱՎՈՒԹՅԱՆ ՆՈԽԱԶ

Հին դարերում հրեաները կրոնական մի յուրահատուկ սովորություն ունեին, որ կոչվում էր «ազազել», կամ «քավության նոխազ»: Տարին մեկ անգամ, նշանակված օրը, այդ ծիսակատարության ժամանակ ժողովուրդը հավաքվում էր: Մի այծ զոհաբերում էին աստծուն, իսկ մյուսին հանդիսավոր կերպով քշում էին դեպի անապատ, կանխապես ինբթով ձեռքերը քսելով նրան: Կարծում էին, որ դրանով ամբողջ ժողովրդի մեղքերը անցնում են վտարված այծին և նա դրանք տանում է իր հետ: Այս սովորությունն արտացոլում է տարբեր ժողովուրդների լեզուներում մնացած «քավության նոխազ» արտահայտությունը: Փոխաբերական իմաստով այդպես են կոչում այն մարդուն, որ պատասխան է տալիս, հատուցում ուրիշների գործած պանցանքների ու մեղքերի համար:

### ԿՈԼՈՒՄԲՈՍԻ ՁՈՒ



Մի պատմություն կա, որ գուցե հնարովի է: Ամերիկան հայտնաբերող Կոլումբոսին հրավիրում են մեծավոր կարդինալ Մենդոզեի մոտ: Սեղանի շուրջը, հյուրերի խնդրանոք, նա պատմում է, թե ինչպես հայտնաբերեց նոր Երկիրը (որը, ի դեպ, նա համարում էր Հնդկաստանը): Ներկաներից մեկը, սահմանափակ, բայց ինքնավստահ մի մարդ, ուսերը թոթվելով ասում է. «Այդքան հե՞շտ»:

Կոլումբոսը նայում է նրան և, ափսեից վերցնելով եփած ձուն, մեկնում է այդ մարդուն, ասելով. «Այնպես արեք, որ ձուն կանգնի քթի վրա»: Հասկանալի բան է, ձուն կանգնեցնելու բոլոր փորձերը անցնում են ապարդյուն: «Դա անհնար է...»— ասում է Կոլումբոսի վիրավոված խոսակիցը: «Շատ հեշտ բան է»,— հեգնանքով պատասխանում է ծովագնացը և, ձվի քիթը սեղանին խփելով կոտրում ու առանց դժվարության սահպում է, որ ձուն կանգնի:

«Կոլումբոսի ձուն» արտահայտությունը դարձել է դժվար կացությունից սրամտորեն և անսպասելի ճանապարհով դուրս գալու արտահայտություն, դժվար հարցը հեշտությամբ վճռելու համանիշ:



պրոցի շրջակայքը մի ժամանակ ամայի տարածություն էր, լցված շինարարական աղբով: Աշակերտները սոտ մեկ հեկտար տարածություն մաքրեցին և հիմնադրեցին անհա այս փորձարարական հողամասը:

Անցել է շուրջ տասը տարի, և դպրոցը շրջապատվել է մի փարթամ այգիով, ծաղիկներով ու բանջարանոցային այլևայլ կուլտուրաներով: Այգին ուշագրավ է ոչ միայն իր գեղեցկությամբ ու հմայքով, այլև կատարվող փորձարարական աշխատանքով: Հողամասը բաժանված է երեք մասի: Առաջին օղակը մշակում ու փորձեր է անում այգեգործության ուղղությամբ, երկրորդը՝ ծաղկաբուծության, երրորդը՝ բանջարաբուծության: Այս երեք օղակների անդամներից էլ կազմված է պատանի բնասերների խմբակը: Մինչև խմբակի պարապմունքներին ու աշխատանքներին մասնակցելը նրանք քիչ բան գիտեին տարբեր բանջարեղենների, ծաղիկների ու մրգատու ծառերի փոշոտման, սերմակալների յուրահատկության և դրանց խաչաձևման մասին: Բնությունն ինքն ընդառաջ եկավ նրանց, բացեց իր գաղտնիքները: Եվ այժմ Ալվարդ Պողոսյանը, Անլավնի Ազիզյանը, Վարդան Բաբայանն ու խմբակի մյուս անդամները այնքան հետաքրքիր գործեր են կատարել ու նոր բան իմացել, որ տարիների իրենց տքնաջան աշխատանքի և ուսումնասիրության համար լրիվ վարձատրված են զգում իրենց:

Պատանի բնասերները, չեխ նշանավոր գիտնական Գրեգորի Մենդելի բույսերի գեների վերաբերյալ ուսմունքին ծանոթանալուց հետո, սկսեցին եգիպտացորենի, կաղամբի, բողկի, շաքարի ճակընդեղի և այլ կուլտուրաների վրա փորձեր կատարել: Աշակերտները առանձնակի հուզմունքով են խոսում կաղամբի վրա կատարած փորձերի մասին, որն այնքան հրճվանք և հիասթափություն էր պատճառել խմբակի ղեկավարներին:

Սովորաբար կաղամբի նախորդ տարվա սերմակալներից սերմ են ստանում, իսկ նրանք երկար ուսումնասիրությունից հետո հնարավոր համարեցին սերմակալից գլուխ կաղամբ ստանալ: Առաջին տարին սերմակալների վրա մի քանի գլուխ բռնեց: Հաջորդ տարին յուրաքանչյուր սերմակալի վրա մեկ աչք թողեցին և տասնութ կիլոգրամանոց գլուխ ստացան: Թեև դա հեռու էր նրանց սպասածից, բայց, այնուամենայնիվ, արդյունքից գոհ էին՝ փորձը ստացվել էր: Հաջորդ տարի ավելի մեծ ուշադրություն դարձրին կաղամբների անին, լավ մշակեցին, և բնությունը փոխհատուցեց. քսանհինգ կիլոգրամանոց կաղամբի գլուխներ ստացան: Դրանցից երկուսը հանձնվանեցին Մոսկվայի, իսկ երկուսը՝ Երևանի ցուցահանդեսներում:

Գոհացուցիչ արդյունք տվեց նաև կարտոֆիլի վրա կատարած փորձը: Մեկ հեկտարից ստացվեց 150 ցենտներ կարտոֆիլ: Այն դեպքում, երբ հանրապետության բարձրագույն ցուցանիշը 140 ցենտներ է:

# ԲՆՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑԸ

*ԷԴՎԱՐԴ ՄԱԼԽԱՍՅԱՆ*

*Վերին Արտաշատի պատանի բնասերները տարիներ շարունակ արժանանում են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի առաջին կարգի դիպլոմների, մրցանակների և դրամական պարգևների։ Տարը տարի նրանք համարվում են ցուցահանդեսի պատանի բնասերների առաջավորի պատվավոր անդամներ։ Անցյալ տարի նրանց ներկայացրած ցուցանմուշները նորից լավագույնների շարքը դասվեցին, իսկ դրանց հեղինակները պարգևատրվեցին առաջին կարգի դիպլոմով, դրամական պարգևով և մրցանակով։*

Արդեն քանի տարի է, ինչ խմբակի անդամները փորձեր են կատարում շաքարի ճակնդեղի նոր տեսակ ստանալու ուղղությամբ։ Ինչպես հայտնի է, կերի ճակնդեղի գլուխը խոշոր է լինում, բայց շաքարայնությունը իսն աստիճանից չի անցնում, իսկ շաքարի ճակնդեղի գլուխը՝ փոքր, սակայն քաղցրությունը անցնում է քսան աստիճանից։ Առաջին տարում նրանք այդ երկու տեսակները խաչաձև փոշոտեցին։

Ստացվեց նոր տեսակի ճակնդեղ՝ բարձր շաքարայնությամբ և ավելի բերքատու։ Սովորաբար մեկ հեկտարից ստացվում է 400 ցենտներ բերք, իսկ նրանք ստանում են 800 ցենտներ։ Նոր տեսակի ճակնդեղի փորձերը շարունակվում են։ Ամեն տարի ամենախոշոր ճակնդեղները առանձնացնում ու դրանցից սերմ են վերցնում, որ ավելի ազնվացնեն ու բերքատու դարձնեն այն։

Պատանի բնասերները երկար ու տևական աշխատանքներ են կատարել նաև եգիպտացորենի վրա։ Մեր տեղական՝ դեղնավուն-ատամնավոր եգիպտացորենի ծաղիկները խաչաձևել են վրացական՝ շագանակագույն-ուռուցիկ եգիպտացորենի ծաղիկներին և ինքնատիպ բերք ստացել։

— Մեր խմբակում այժմ նոր աշխատանքներ են տարվում,— ասում է խմբակի ղեկավար ընկեր Խաչատրյանը։— Տարեսկզբին դրել ենք կաղամբի և բողկի խաչասերման փորձը։ Ուզում ենք այնպիսի խառնուրդ ստանալ, որի գլուխը կաղամբ լինի, իսկ արմատը՝ բողկ։ Առաջին տարին է և, իհարկե, մեծ սպասելիքներ չէինք կարող ունենալ, սակայն առաջին բերքը մեզ ուրախացրեց։

Այդ ուղղությամբ աշխատել է նաև ակադեմիկոս Կարպեչենկոն և ստացել է մի բույս, որը ոչ կաղամբի և ոչ էլ բողկի է նման եղել։ Հետագայում նա փորձերը չի շարունակել։ Իսկ պատանիները վերսկսել են այդ փորձը և ուզում են անպայման որոշակի արդյունքի հասնել։

---

*Սեպտեմբերի 19-ը անտառի աշխատողի օրն է*



# ԱՆՏԱՌԱՊԱՀԸ

*ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Անտառի ծեր երգի մեջ,
(Վերում երկինքը վճիտ...)
Թաքնվել է բացատում
Գերանակապ մի խրճիթ։

Շուրջ-բոլորը սոճիներ
Ու կաղնիներ հինավուրց,
Որ պատմում են խշշալով
Հին լեգենդներ ու զրույց։

Պատմում են բյուր հեքիաթներ
Մանկությունից անտառի,
Ու լսում են ականջիչ
Մացառուտները վայրի։

Լուռ լսում են գետ, քամի,
Նապաստակները պլշած,

Ու վազում են ծառն ի վեր
Սկյուռիկները հիացած։

Ու երբ մութն է փարփլվում,
Ծածկում թուփ ու արահետ,
Իր խրճիթն է նա դառնում
Անտառապահը շան հետ։

Վառում օջախը նորից,
Հացի սեղանն է բացվում,
Իսկ դռնակից... գիշերվա
Տաք ձայներն են ներս լցվում։

Ներս են լցվում բույր ու գույն
Պատառիկներ հեքիաթի,
Ստվերներ են թափառում
Անկյուններում խրճիթի։

# ԱՄՊԵՐԻ ԱՆՈՒՆԸ ԾԱՆՈԹ Է ԱՆԳԱՄ ԽՈՀԱՐԱՐՆԵՐԻՆ

*ԱՐՏԱԿ ՌՈՍԿԱՆՅԱՆ*

1801-ի նոյեմբերի 7-ին, 12-ին և 22-ին Նապոլեոն Բոնապարտը ներկա եղավ Վոլտայի դասախոսություններին և առաջին իսկ օրը հանդես եկավ ճառով: Նա Վոլտայի գյուտը համարեց ֆրանսիական գիտության համար ուղենիշ հանդիսացող երևույթ: Այնուհետև նա հայտարարեց, որ հետայսու Ֆրանսիայի դռները բաց են բոլոր մեծ գիտնականների առջև: Նա խոստացավ սահմանել 60 հազար ֆրանկ դրամական պարգև տվյալ տարվա այն լավագույն գիտնականին, որի հետազոտությունները էլեկտրականության ասպարեզում կլինեն Ֆրանկլինի կամ Վոլտայի արդեն կատարած հետազոտությունների կարգի: Մրցանակաբաշխությանը կարող էին մասնակցել նաև արտասահմանյան գիտնականները:

Ակադեմիան այդ մասին տեղյակ պահեց բոլոր ինստիտուտներին և գիտա-հետազոտական կենտրոններին: Որոշ ժամանակ անց, Նապոլեոնի խոստումը տպագրվեց գրեթե բոլոր ֆրանսիական թերթերում և ամսագրերում:

Այն ժամանակվա համար 60 հազար ֆրանկը վիթխարի գումար էր: Էլեկտրականությամբ սկսեցին զբաղվել նույնիսկ այն ֆիզիկոսները, որոնք մինչ այդ արհամարհում էին այս բնագավառը: Էլեկտրականության վրա ծավալված «արշավանքը» ստացավ մասսայական բնույթ:

Այդ գումարի տենդով վառված, առաջինը գրոհի նետվեց Փարիզի հայտնի Պոլիտեխնիկական դպրոցը: Նրա աշխատակիցները պատրաստեցին վոլտյան սյուների մի ամբողջ մարտկոց, ընդ որում տարբեր չափերի, նրանցից մի քանիսը, օրինակ, բաղկացած էին մոտ վեց հարյուր ցինկե և պղնձե քառակուսի թիթեղներից: Համատեղ արտադրած էներգիան գերազանցեց փորձարարների սպասելիքները: Արդյունքը ապշեցուցիչ էր:

Բայց ի՞նչ. գիտության վրա նրանք ոչինչ չէին ավելացրել. պարզապես կատարելագործել էին վոլտյան սյունը, իսկ դրա համար մրցանակ, իհարկե, չէր սահմանված:

Սահմանված մրցանակը այդպես էլ բաժին չընկավ ոչ մեկին: Մրցանակը մնաց անտեր, իսկ էլեկտրականությունը տեղի տվեց Ֆրանսիայի ֆիզիկոսների առջև. 20-ական թվականներին իրար հաջորդեցին այնպիսի հայտնագործություններ, ինչպիսիք են Բիո-Սավար-Լապլասի և Ամպերի օրենքները: Այս գիտնականներից միայն վերջինին էր բախտ վիճակվել ստանալու մի պարգև, որը անշուշտ շատ ավելի արժեր, քան 60 հազար ֆրանկը: Այդ պարգևը բաղկացած էր ընդամենը հինգ տառից՝ Ա, Մ, Պ, Ե, Ր տառերի միացությունը տալիս էր նրա անունը, ի պատիվ որի կոչվեց էլեկտրական հոսանքի ուժի միավորը: Փաստորեն նա Վոլտայից հետո երկրորդ ֆիզիկոսն էր, որի անունը դարեր շարունակ պետք է անցներ շուրթից-շուրթ:

Ամպերի կյանքը վատ սկիզբ ունեցավ. նա դեռ անչափահաս էր, երբ կառափնարան տարան հորը՝ Լիոնի նշանավոր դատավորներից մեկին: Վրա հասած հեղափոխությունը իր ալեկոծության մեջ էր առել նաև նրան: Մահապատժից առաջ կնոջն ուղղված նամակում նա գրում է. «Ես կասկածում եմ այն մարդու գոյությանը, որն ինձնից ավելի նվիրված լինի հայրենիքին...»

Ամպերը մինչև իր կյանքի վերջը սիրով էր հիշում համեստ ու բարի հորը, որի հիմնական ծախսերն էին կազմել գրքերը և երկրաչափական գործիքները:

Նա իր որդու մեջ տեսել էր ապագա մեծ մաթեմատիկոսի, և դա էր պատճառը, որ նրանց տունը լցվել էր մաթեմատիկական գրքերով և գործիքներով:

Հոր կամքով Անդրե-Մարին դպրոց չհաճախեց, սակայն դա չխանգարեց, որ նա ստանա լավ կրթություն: Տասներեք տարեկան հասակում նա Լիոնի ակադեմիա ներկայացրեց շրջանի քառակուսացման խնդրի լուծումը, խնդիր, որը սակայն, սկզբունքորեն անլուծելի է:

Հոր նման սիրահարված էր գրականությանը, գրում էր բանաստեղծություններ: Հետաքրքրվում էր մեխանիկայով, քիմիայով, հուշարձանով(?), բուսաբանությամբ:

Ամպերի մանկությունն ու պատանեկությունն ան-

## ԼՅՈՒՄԻՆԱԼԻ ՓՈԽԱՐԵՆ

**Փարիզյան խմբագրություններից մեկն այսպիսի նամակ ստացավ.**

**«Վերջերս բժիշկն ինձ խորհուրդ տվեց երեկոները քնաբեր ընդունել: Այսօր արթնանալով ես տեսա, որ քնաբեր հաբը սեղանիկի վրա է, մինչդեռ վերնաշապիկիցս մի կոճակ է պակասում: Քանի որ ողջ գիշեր հանգիստ քնել էի, ապա ինձ սկսեց տանջել հարցը. արդյոք այն նյութը, որից պատրաստված էր կոճակը, ունի՞ քնաբեր հատկություն»:**

**Խմբագրությունը պատասխանեց այսպես.**

**«Ձեր ստացած արդյունքն այնքան անսպասելի է, որ պահանջվում է մանրակրկիտ փորձնական ստուգում: Խորհուրդ ենք տալիս համառորեն շարունակել փորձը ևս երկու շաբաթ: Անհաջողության դեպքում փորձեք վերարկուի կոճակները»:**



## ՈՍԿՅԱ ԿԱՅԾԱԿ

Ըստ վաղեմի ավանդության, կայծակը խփելուց հետո, գետնի վրա մնում են նրա հետքերը՝ ոսկե ձուլվածքների, ոսկեդրամների ձևով։ Վերջերս այդ առասպելը բավական ճշգրիտ կերպով «հաստատվեց»։ Բուլղարիայի Ռուդոզեմ քաղաքի մոտակայքում կայծակնահար եղավ մի ծեր կաղնի, և տեղաց... ամենաիսկական ոսկե անձրև։ Պարզվեց, որ կաղնու բնում պահված է եղել 17-րդ դարի թուրքական ոսկեդրամով լի կավե կճուճ։

## «ՋԵՌՔ ՋՏԱՅ ԻՆՁ»

Ո՞մ մտքով կանցնի, որ այս գեղեցիկ գորտը երկրագնդի ամենաթունավոր արարածներից է։ Բայց դա այդպես է։ Նա պատկանում է դենդրոբատիդների ընտանիքին։ Այդ ընտանիքը հայտնի է նրանով, որ մաշկի միջոցով արտադրում է թույն, որի համեմատությամբ կոբրայի կամ, ասենք, կարիճի




ցավ այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ կատարվեցին էլեկտրաստատիկայի բնագավառի գրեթե բոլոր մեծ հայտնագործությունները, երբ Ֆրանկլինի ֆիզիկան ցնցեց աշխարհը. Ամպերը դեռ տասներկու տարեկան էր, երբ լույս տեսավ Վոլտայի առաջին հոդվածը գալվանական էլեկտրականության մասին, Ամպերը արդեն քսանն անց էր։ Այդ իրադարձությունները չէին կարող չանդրադառնալ և տակնուվրա չանել Ամպերի զգայուն հոգին, չմղել նրան դեպի էլեկտրականություն։

Եվ ահա 1820-ի սեպտեմբերի 18-ին Ամպերը Փարիզի գիտությունների ակադեմիային տեղյակ պահեց էլեկտրականության ասպարեզում կատարած իր գյուտի մասին։ Նրա գյուտը, որ արտաքուստ թվում էր սովորական մի երևույթի բացահայտում, փաստորեն նոր դուռ բացեց ֆիզիկայի համար և հիմք դրեց մի նոր բնագավառի՝ էլեկտրադինամիկային։

Այնուամենայնիվ, ի՞նչ հաղորդեց նա փարիզյան ակադեմիային, ինչո՞վ պայմանավորվեց նոր գիտության՝ էլեկտրադինամիկայի ծնունդը։ Նրա հաղորդումը երկու հոսանքակիր հաղորդիչների փոխազդեցության մասին էր։ Իր առաջին զեկուցման մեջ այդ փոխազդեցությունը Ամպերը կոչեց «վոլտյան ձգողություն և վանողություն», իսկ հետագայում՝ պարզապես էլեկտրական հոսանքների ձգողություն և վանողություն։

Ո՞րն էր այդ երևույթի էությունը։

Երկու զուգահեռ հաղորդիչներով հոսանք բաց թողնելիս Ամպերը նկատեց, որ նրանք իրարից վանվում են կամ իրար ձգում։ Պարզվեց, որ երբ հաղորդիչներով հոսող հոսանքներն ունեն նույն ուղղությունը, ապա հաղորդիչները ձգվում են, մոտենում իրար, իսկ երբ նրանցով հոսող հոսանքներն ուղղված են հակառակ, ապա հաղորդիչները վանվում են։

Ասում են, որ երբ Ամպերը վերջացրեց իր դասախոսությունը, ֆիզիկոսներից մեկն ասաց. «Ի՞նչ նոր բան կա ձեր ասածի մեջ. եթե հոսանքակիր հաղորդիչը կարող է ազդել, օրինակ, որևէ սայրի դրված սլաքի վրա, ապա պարզ չէ՞, որ այն կարող է ազդել նաև հոսանքակիր մեկ ուրիշ հաղորդիչի վրա»։ Ամպերը հանկարծակիի եկավ և չիմացավ ինչ պատասխանել։

Բայց նրան օգնության եկավ Արագոն։ Նա գրպանից հանեց երկու բանալի և ասաց. «Սրանցից յուրաքանչյուրն առանձին-առանձին կարող են ազդել և շեղել սլաքի ուղղությունը, իսկ իրար վրա կարո՞ղ են ազդել այնպես, որ առաջանա փոխադարձ դիրքերի փոփոխություն»։

Ինչպես, որոշակի մագնիսական հատկություններով օժտված, երկու երկաթյա բանալիներից յուրաքանչյուրը կարող է խոտորել դյուրաշարժ սլաքը, բայց նրանցից և ոչ մեկը չի կարող փոխել մյուսի դիրքը։

Շատ ավելի զավեշտական էր այն, ինչ տեղի ունեցավ Ամպերի դասախոսության և փորձերի ցուցադրման վերջում։ Դատարկվել էր ամբողջ դահլիճը, գնացել էին բոլորը, Ամպերը նույնպես։ Դահլիճի շեմին կանգնել էր Լապլասը, իսկ խորքում սարքերն ու գործիքներն էր հավաքում Ամպերի ասիստենտը՝ Դանիել Կոլադոն։ Վերջինս երբ վերջացրեց իր գործը և դուրս եկավ դահլիճից, Լապլասը բարեկամաբար բռնեց նրա ձեռքը և մանկան միամտությամբ հարցրեց. «Արդյոք դուք չէ՞ք, երիտասարդ, հաղորդիչները իրար մոտեցնողն ու հեռացնողը»։ (Շարունակելի)



թույնը դատարկ բան է: Կոստա-Ռիկայում (հատկապես այդտեղ են բազմանում թունավոր գորտերը) նախկինում ապրող հնդկացիները, շատ լավ ծանոթ լինելով դենդրոբատիդների առանձնահատկություններին, խարույկի վրա խորովում էին երկկենցաղին: Այդ դեպքում գորտի գեղձերը ավելի շատ թույն են արտադրում: Հետո նրանք նետերի ծայրերը թաթախում էին այդ թույնի մեջ, և սարսափելի զենքը պատրաստ էր:

Պետք է ասել, որ գորտերը իրենք էլ լավ «գիտեն» իրենց այդ առանձնահատկությունը, դրա համար էլ «զարդարվել» են այդքան վառ գույներով, որով ազդարարում են. «Ձեռք չտա՛լ ինձ»:

## ՆԵՐԿԸ ՏԱՔԱՑՆՈՒՄ Է

Անհրաժե՞շտ են արդյոք ջեռուցման սարքերը սենյակներում: Ինչ խոսք. ջերմությունը անհրաժեշտ է, բայց այդ հսկայական կոպիտ ռադիատորները շատ են տգեղացնում բնակարանները: Այդ խնդրի լուծման գեղեցիկ ձև են առաջարկել անգլիացի ինժեներները, նրանք մշակել են հատուկ էլեկտրահաղորդիչ ներկ պատերը ներկելու համար:

Տաքանալու համար, բավական է ներկել պատերը այդ ներկով և էլեկտրական հոսանքը միացնել ընդամենը 12 վոլտանոց պղնձյա երկու թիթեղիկների: Այդ դեպքում ներկը ճառագայթում է ջերմային էներգիա և, միաժամանակ ակկումուլյատորի դեր է կատարում: Այդ գեղեցիկ տաքացուցիչը քառասուն տարվա անընդհատ աշխատանքի դիմացկունություն ունի:

## ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅԱՆ ՆԱԽԸՆՏՐԵԼԻ ՄԻՋՈՑԸ

Վերջերս մամուլում տպագրվեց հաղորդագրություն այն մասին, որ լոս-անջելոսցի նշանավոր ֆանտաստ գրող Ռեյ Բրեդբերին հրաժարվել է Փարիզում բեմադրվող իր «Մարսյան խրոնիկա» պիեսի պրեմիերային մասնակցելու հրավերից:

Բանն այն է, որ տիեզերական թռիչքների ու ֆանտաստիկ արագությունների մասին գրող Ռեյ Բրեդբերին երբեք չի թռել ինքնաթիռով, վերջին քառասուն տարում նույնիսկ ավտոմեքենա չի նստել, իսկ նավի մասին լսել անգամ չի ուզում:

Նրա ընդունած փոխադրամիջոցներն են՝ գնացքը և հեծանիվը:





## ՊԱՏԱՆԻ ՈՒՍԱՆՈՂԸ

Երեք տարեկան հասակից մայրը նրա համար գրքեր էր կարդում, բանաստեղծություններ սովորեցնում: Բայց նա՝ հակառակ այդ տարիքի երեխաների, մի քառատողը երբեմն օրերով չէր կարողանում անգիր սովորել: Ծնողները անհանգստանում էին, ըստիպված ավելի շատ էին զբաղվում նրանով: Մի անգամ մայրը տղայի հետ զրուցելիս՝ ձեռքի սովորական, բարակ մետաղալարով պատրաստեց օղակ:

— Այդ ի՞նչ է, մայրի՛կ,— հետաքրքրվեց Դավիթը:

— Օղ է, հասարակ օղ, մեր հայերենի «Օ» տառի պատկերը:

Փոքրիկը անմիջապես տպավորությունը արտահայտեց, թղթի վրա գրեց «Օ»: Այդպես աստիճանաբար, մոր օգնությամբ, նա սովորեց հայերեն, ռուսերեն, իսկ 5—6 տարեկանում՝ նաև ֆրանսերեն և անգլերեն տառերը:

Հայրիկն էլ նրան ծանոթացնում էր թվերի հետաքրքիր աշխարհին, հետո սկսեցին թվաբանական վարժություններ, խնդիրներ լուծել: Անուհետև Դավիթը մեկեն բացվեց, մեկ ուսումնական տարում նա անցնում էր մի քանի դասարան: Միայն 9-րդ և 10-րդ դասարանի դասընթացը լրիվ անցավ:

Հիմա արդեն 13 տարեկան է: Անցյալ տարի նա փայլուն քննություններ հանձնելով ընդունվեց Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի կիբեռնետիկայի ֆակուլտետը:

Չեզ նման սովորական, շատ սովորական պատանի է Դավիթը: Երևի ավելի ճիշտ կլիներ ասել՝ խակական պիոներ... Սիրում է կարդալ, շատ կարդալ: Իսկ ֆուտբոլ, դե ո՞ր երեխան չի սիրում ֆուտբոլ խաղալ: Գիտի աշխարհի լավագույն բոլոր ֆուտբոլիստներին, առաջավոր թիմերին, կարևոր խաղերի տեղն ու ժամանակը, քիչ-միչ էլ զբաղվում է երաժշտությամբ, բայց նրա տարերքը թվերի աշխարհն է:

*ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*

Արձագանքում են 9-րդ դասարանցու նամակին

## ԻՄ ԽՈՐՀՈՒՐԴԸ

1. Հարգելի՛ 9-րդ դասարանցի աղջիկ, սովորեք ուղղագրություն։
2. Մի՛ շտ նախադասություններ կազմեք։
3. Ամեն մի անբովանդակ շարադրություն մի՛ ուղարկեք խմբագրություն։
4. Շատ և ուշադի՛ր ընթերցեք գեղարվեստական գրքեր։
5. Ձեզ ընդամենը մեկ տարի է մնում ավարտելու միջնակարգ դպրոցը։ Աշխատեք լա՛վ սովորել և վերացնել ձեր անգրագիտությունը։
6. Հարգելի՛ 9-րդ դասարանցի աղջիկ, ձեր նամակում կատարել եք 22 տառասխալ և 2 կետադրական սխալ։ Նորի՛ց կարդացեք ձեր նամակը և ուղղե՛ք սխալները։

*ԱՆԱՀԻՏ ԳԱԼՍՏՅԱՆ*

*Կիրովականի № 1 միջն. դպր. 6-րդ Գ դաս. աշ.*

## 9-ՐԴ ԴԱՍԱՐԱՆՑՈՒՆ

Կարդալով այդ նամակը, ես՝ որպես մայր, կցանկանայի խորհուրդ տալ այդ աղջկան, որ թող լավ տիրապետի մայրենի լեզվին, որպեսզի այդքան տառասխալ թույլ չտա, և ոչ թե հետաքրքրվի մի ինչ-որ ծանոթ կամ անծանոթ զույգի կյանքով։ Այսքանը։

Գ. Կ.

*Թալինի շրջան, տնային տնտեսուհի*

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

*Մեր ամսագրի 1976 թ. № 1-ում տպագրված իններորդ դասարանցու նամակը մեծ արձագանք գտավ մեր ընթերցողների շրջանում։ Հայաստանի և հարևան հանրապետությունների հայկական դպրոցների հարյուրավոր աշակերտներ արտահայտեցին իրենց վերաբերմունքը։*

*Այդ նամակներից մի քանիսը արդեն տպագրել ենք և ծանոթ են մեր ընթերցողներին։ Բոլորը նախատում և հորդորում են 9-րդ դասարանցուն՝ լրջորեն զբաղվել իր դասերով, գրագետ գրել և մտահոգվել գիտելիքներ ձեռք բերելու մասին։*

*Ցավոք, խմբագրության ստացած որոշ նամակների հեղինակներ, բոլորի նման զայրանալով իններորդ դասարանցու անգրագետ, անհեթեթ նամակի վրա, իրենք նույնպես անթերի չեն գրում, իրենց նամակներում թույլ են տվել աններելի լեզվական սխալներ։ Այսպիսիների մասին ժողովուրդը լավ խոսք ունի. իր աչքի գերանը չի տեսնում, ուրիշի աչքի փուշը տեսնում է։*

*Խմբագրությունը շնորհակալություն է հայտնում բոլոր այն նամակների հեղինակներին, որոնք իրենց ասելիքը ձևակերպել են հստակ, գրել անսխալ։ Ինչ վերաբերվում է 9-րդ դասարանցուն, ապա տպագրված նամակներից, կարծում ենք, նա և նրա նմանները անհրաժեշտ եզրակացություններ կանեն։*


Լույս է տեսնում 1923 թվականից

№ 9 սեպտեմբեր 1976 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ՆԿ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Թ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06730։ Պատվեր 1430։ Տպաքանակ՝ 74006։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 22/IX 1976 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղրապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ՄԻ ԶԱՄԲՅՈՒՂ ՄԱՍՈՒՐ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Ձորում կա գետակ, առվույտի մարգեր,
Մի կանաչ քողտիկ, քողտիկի դռան
Եկել ու բրդոտ մի շուն է պառկել,
Թաթերի վրա գլուխը դրած:

Խորհրդավոր է քողտիկի ներսում,
Այնտեղ մազերն է սանրում մի աղջիկ,
Քողտիկի դռան՝ մի զամբյուղ մասուր,
Մասուրի վրա՝ մի փունջ կակաչի:

Քողտիկի ներսը հայելի է ջինջ,
Բուրմունքի սափոր, մասուրի կարմիր,
Փչում է ձորի փայտե կամուրջից՝
Առվույտի ծաղկած մարգերի քամին:

Իրիկունն անտես խշշում է գետով
Եվ իր ափերին ցողեր է ցանում,
Մի փոքրիկ աղջիկ նեղ արահետով
Ձորից մի զամբյուղ մասուր է տանում:

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

